АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ГОСУДАРСТВЕННЫЙ ИСТОРИЧЕСКИЙ МУЗЕЙ АРМЕНИИ

Х. А. МУШЕГЯН

# МОНЕТНЫЕ КЛАДЫ АРМЕНИИ




ИЗДАТЕЛЬСТВО АН АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1973

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՊԵՏԱԿԱՆ ԹԱՆԳԱՐԱՆ

Խ. Ա. ՄՈՒՇԵՂՅԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԴՐԱՄԱԿԱՆ ԳԱՆՁԵՐԸ




ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1973

902 · 9(c 43)
Մ 97

*Գրքում ներկայացված են Հին Հայաստանում տարածված արծաթե դրամների բնորոշ տեսակները։ Նրանց շրջանառության տվյալներով բացահայտվում են Հայաստանի միջազգային կապերի գլխավոր ուղղությունները ուշ հելլենիստական ժամանակաշրջանում։ Սելևկյան, պարթևական, հայկական, կապադովկիական, հռոմեական (հանրապետության) և այլ դրամների պատկերատիպերը ներկայացնում են դիցաբանական կերպարներ, արքայական դիմաքանդակներ, պաշտամունքային նշաններ, քաղաքական իմաստի արձանագրություններ և այլն։*

*Քննության առնված դրամագիտական վկայությունները աղբյուրագիտական նշանակություն ունեն արտաշեսյան Հայաստանի և նրա հետ առնչված երկրների պատմության ու մշակույթի համար։*

Մ 0162 · 019 / 703 (02) · 73 39—69

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ՀԱՄԱՌՈՏԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Բասմաջեան — *Հայկական ընդհանուր դրամագիտութիւն եւ Հայաստանի վերաբերեալ դրամներ, աշխատասիրեց Կ. Յ. Բասմաջեան, Վենետիկ, 1936։*

ՀՊԹ —*Հայաստանի պատմության պետական թանգարան (Երևան)։*

Պտուկեան —*Զարեհ Պտուկեան, Արտաշեսեան հարստութեան դրամները, Վիեննա, 1969 (Ազգային մատենադարան, հատոր ՄԺ)։*

տ. - *տրամագիծ*

ք. — *մետաղի քաշ*

գր. — *գրամ*

մմ. — *հազարերորդական մետր*

կ. — *կնիքների առանցքային ուղղությունը դրամի երկու կողմերի համեմատությամբ։*

*Зограф* — А. Н. Зограф. Античные монеты. М.—Л., 1951 (Материалы и исследования по археологии СССР, № 16)

ИНВ —Инвентарный номер хранения Государственного музея истории Армении (гор. Ереван. пл. Ленина, Министерство культуры Армянской ССР).

ОНЭ — Рукописный каталог античных монет Отдела нумизматики Государственного ордена Ленина Эрмитажа (Ленинград).

*Пахомов* — Е. А. Пахомов, Монетные клады Азербайджана и других республик, краев и областей Кавказа. Баку, вып. I, 1926, вып. II, 1938; вып. III, 1940; вып. IV—V, 1949; вып. VI, 1954; вып. VII, 1957, вып. VIII, 1959; вып. IX, 1966.

в — вес в граммах

д — диаметр в миллиметрах

↑ — направление осей штемпелей лицевой и оборотной сторон

[ ] — в квадратные скобки заключены знаки, слова и легенды, не сохранившиеся на монетах и восстановленные при определении

Л. ст. — лицевая сторона

Об. ст. — оборотная сторона.

*Babelon* — E. Babelon, Description historique et chronologique des monnaies de la republique romaine, Paris, 1885—1886, vol. I—II.

BMC — British Museum. Catalogue of the Greek coins of Galatia. Cappadocia and Syria. By Warwick Wroth, London. 1899. Reprint: Bologna 1964.

BN — Catalogue des monnaies grecques de la Bibliotheque Nationale. Les rois de Syrie, d'Armenie et de Commagene par Ernest Babelon, Paris, 1890.

*Gardner* — A catalogue of the Greek coins in the British Museum. The Seleucid kings of Syria by Percy Gardner, M. A. Edited by Reginald Stuart Poole, London, 1878. Reprint: Bologna, 1963.

*Grueber* — Coins of the Roman Republic in the British Museum by H. A Grueber, F. S. A. Vol. I—III, London, 1910.

*Head* — Historia numorum. A manual of Greek numismatics. New and enlarged edition by Barclay V. Head, London, 1963.

*Mattingly* — Harold Mattingly, M. A. Coins of the Roman Empire in the British Museum, Vol. I, London, 1923.

MN — J. De Morgan, Manuel de numismatique orientale de l'antiquité et du moyen age. Publication achevé sous la direction de K. J. Basmadjian. Tome I, Paris, 1923—1936.

*Morgan* — Monnaies orientales, tome I. Numismatique par Jacques De Morgan, Paris, 1933.

*Müller* — Numismatique d'Alexandre le Grand. Par L. Müller, Basel—Stuttgart, 1957.

*Petrowicz* — Sammlung Petrowicz. Arsaciden — Münzen. Katalog. Verfasst von Alexander Ritter von Petrowicz, Wien, 1904.

*Sellwood* — An Introduction to the coinage of Parthia, by David Sellwood, London, 1971.

*Schroetter* — Fr. Schroetter, Wörterbuch der Münzkunde, Berlin, 1930.

*Seyrig* — Henri Seyrig, Tresor Monetaire de Nisibe, Paris, 1955 (Revue Numismatique p.p. 85—128).

*Sydenham* — The coinage of the Roman Republic, By Edward A. Sydenham, M. A., London, 1952.

*Wroth* — British Museum. Catalogue of the coins of Parthia by Warwick Wroth, London, 1903. Reprint: Bologna, 1964.

# ԳԱՆՁԻ ՀԱՅՏՆԱԲԵՐՈՒՄԸ

*1945 թվականի գարնանը, Հայկական ՍՍՀ Սիսիանի շրջանի Սառնակունք գյուղում հայտնաբերվել էր հելլենիստական արծաթե դրամների մի մեծ գանձ։ Այն բացվել էր գյուղից մոտ մեկ կիլոմետր հեռավորության վրա, դեպի հյուսիս-արևելք, երկու լայնանիստ բլուրների միջև՝ գարնան հեղեղատներից ակոսված սևահողի մակերեսային շերտում։ Այսօր այդ շրջապատում չի նկատվում անցյալի բնակության և ոչ մի հետք։ Տարաբախտաբար ո՛չ գանձի դրամները և ո՛չ էլ կավամանը, որի մեջ նախապես եղել է գանձը, ամբողջությամբ չեն պահպանվել։ Դրամները առաջինը տեսել են Գեղեցիկ և Լուսիկ Մանուկյան քույրերը։*

*Նրանց մայրը՝ Հայկանուշ Թադևոսի Դանիելյանը որոշում է իր դուստրերի համար գոտիներ պատրաստել տալ։ Զանգեզուրում հայտնի էր Գորիսում բնակվող արծաթագործ Գրիգոր Բարխուդարյանը։ 1945 թ. ամռանը Գրիգոր Բարխուդարյանը գալիս է Սիսիանի Բազարչայ գյուղը՝ տեղացիներից ոսկերչական աշխատանքի պատվերներ ընդունելու։ Եվ ահա վարպետին ներկայանում է Մանուկյան քույրերի մայրը և հանձնում մեկուկես կիլոգրամ արծաթյա դրամ՝ երկու գոտի պատրաստելու համար։*

*1946 թ. հուլիսին Հայաստանի պատմական հուշարձանների պահպանության կոմիտեն, Սյունիքի ճարտարապետական կոթողների չափագրության համար Սիսիանի ու Գորիսի շրջանները է գործուղում ճարտարապետներ Գեղամ Սարգսյանին և Բաղդասար Արզումանյանին։ Գեղամ Սարգսյանը, երբ Սիսիանում տեղացիներից լսում է Սառնակունքում բացված գանձի մասին, անմիջապես մեկնում է Սառնակունք և գյուղսովետի օգնությամբ բնակիչներից հավաքում 37 լավ պահպանված արծաթյա դրամը ու հանձնում Հայաստանի պատմության պետական թանգարանի դրամագիտության բաժնին։ Այդ դրամները Գեղամ Սարգսյանին էին հանձնել սառնակունքցիներ Մամիկոն Սահակյանը, Հարություն Եղիազարյանը, Արշակ Օհանջանյանը և ուրիշներ[1]։*

*Այնուհետև Հայաստանի պատմության պետական թանգարանը 1946 թ. սեպտեմբերին Սառնակունք է գործուղում իր աշխատակից Արմենակ Միրզոյանին՝ մնացած դրամները գյուղի բնակիչներից հավաքելու և դրամագյուտի մանրամասնություններին ծանոթանալու համար։ Ա. Միրզոյանին*

---

*[1] Գեղամ Սարգսյանը դրամները թանգարանին է հանձնել 1946 թ. օգոստոսի 30-ին։ Այդ 37 դրամները գրանցված են թանգարանի գույքամատյանում 15077—15113 համարներով։*

հաջողվում է Սառնակունքից բերել ևս 75 արծաթյա հելլենիստական դրամ[1]։ Այդ օրերին Հայաստանի թանգարանին դրամներ են հանձնում սառնակունքցիներ Վարթեւ և Մարիամ Մակարյանները, Գալբահուր և Մարիամ Գաբրիելյանները[2]։ Ուշադրությունն ուղղվում է գանձը գտնող Մանուկյան քույրերին, սակայն վերջիններս դրամների փոխարեն արծաթագործից արդեն ստացել էին իրենց արծաթյա գոտիները և այդ իրեղեն ապացույցները հաստատում են Գրիգոր Բարխուդարյանի այն հայտարարությունը, որ դրամները «ձուլել է»։

Անցնում է ևս երկու տարի։ 1948 թ. մարտի 25-ին, Հայաստանի պատմության պետական թանգարան է ներկայանում արծաթագործ Գրիգոր Բարխուդարյանը և հանձնում արծաթյա վեց դրամ, որոնցից մեկը՝ հայոց թագավոր Արտավազդ II-ի պատկերով, իսկ մյուսները՝ հռոմեական հանրապետության դենարներ[3]։ Նկատի ունենալով գտնված գանձի կարևոր նշանակությունը, թանգարանի տնօրինությունը 1948 թ. հուլիսի վերջերին Սիսիան է գործուղում երեք հոգուց բաղկացած մի արշավախումբ, որի կազմում եղել են դրամագիտության բաժնի վարիչ Ս. Շահնազարյանը, պատմաբան Ա. Միրզոյանը և ճարտարապետ Լ. Սադոյանը։ Սառնակունքում այդ խումբը հետախուզում է գանձի թաղված վայրը և գտնում կոտրված կավամանի մի քանի բեկորներ։

1948 թ. օգոստոսի 5-ին արշավախումբը վերադառնում է Երևան, իր հետ բերելով ևս 60 լավ պահպանված արծաթյա դրամ[4]։ Այսպիսով, մինչև 1948 թ. վերջը, դրամագյուտից երեք տարի անց, Հայաստանի պատմության թանգարանում հավաքվում է 178 արծաթյա դրամ, որոնք ըստ ծագման բաժանվում են հետևյալ տեսակների.

| | | |
|---|---|---|
| Հռոմեական | 103 | դրամ |
| Սելևկյան | 30 | » |
| Փյունիկյան | 26 | » |
| Պարթևական | 8 | » |
| Պերգամյան | 4 | » |
| Հայկական | 3 | » |
| Կապադովկիական | 3 | » |
| Պոնտական | 1 | » |

Ընդամենը 178 դրամ

Սակայն վերահիշյալ հավաքածուն ներկայացնում էր այդ գանձի միայն մի մասը։ Տարաբախտաբար կոտրված կավամանի մի քանի բեկորնե-

---

1 Ա. Միրզոյանի միջոցով Սառնակունքից բերված դրամները Հայաստանի պատմության պետական թանգարանում գրանցվել են 1946 թ. սեպտեմբերի 20-ին, գույքամատյանի 15119—15193 համարների տակ։

2 Սառնակունքի հիշյալ բնակչուհիներին Հայաստանի պատմության պետական թանգարանի կողմից տրվել են նվերներ։

3 Գ. Բարխուդարյանի՝ Հայաստանի պետական թանգարանին հանձնած դրամները գույքամատյանում գրանցված են № № 16022—16027, տե՛ս դրամագիտության բաժնի արծաթ դրամների մատյանի 8869, 8906, 9077, 9079, 9117 համարները։

4 Արշավախմբի բերած հիշյալ դրամները գրանցված են թանգարանի դրամագիտության բաժնի գույքամատյանում № № 16089—16148 (տե՛ս նաև արծաթ դրամների մատյանի № № 8870—8888, 8907, 8935, 8936, 9080—9115, 9118, 17169 գրանցումները)։

րը, որոնք գտնվել էին 1948 թվականին, հնարավորություն չէին ընձեռել վերականգնելու նրա նախկին տեսքը։ Այնուհետև թանգարանը երկար ժամանակ այլևս ոչ մի դրամ չի ստանում Սառնակունքի գանձից, թեև առանձին հնասերներ շարունակում են հետաքրքրվել դրամագյուտի ճակատագրով։ Գանձից ծագած դրամների այն նմուշները, որոնք պահվում են թանգարանում, իրենց բազմատեսակությամբ լուրջ հետաքրքրություն էին առաջ բերել պատմաբանների, հնագետների ու դրամագետների շրջանում։ Այդ առիթով 1950 թ. հրատարակվում է Ա. Շահնազարյանի «Սիսիանի շրջանի Սառնակունք գյուղի մոտ հայտնաբերված գանձը» հոդվածը[1]։

Հեղինակը մանրամասն շարադրել է գանձի հայտնաբերման պատմությունը, տվել 152 դրամների նկարագիրը, որի գործում նրան օգնել էր Ե. Ա. Պախոմովը։ 1954 թ. լույս է տեսնում դրամագետ Ե. Ա. Պախոմովի ուսումնասիրությունը, նվիրված նույն գանձի արդեն 178 դրամներին, այսինքն՝ այն բոլոր տեսակներին, որոնք հայտնի էին Ա. Շահնազարյանի հայերեն աշխատությունից և հավելյալ 26 դրամների մասին նոր տեղեկություններ, որոնք Ա. Շահնազարյանը հիշատակել էր իր աշխատության ներածականում, բայց չէր տվել նրանց նկարագրությունը։

Ե. Ա. Պախոմովը քննելով դրամները, այն կարծիքին էր, որ գանձը պետք է բաղկացած լիներ ավելի քան 300 դրամից[2]։



Սառնակունքի դրամագյուտից 18 տարի անց բացվում է գաղտնիքը այն դրամների մասին, որոնք համարվում էին ձուլված, այսինքն՝ անվերադարձ կորած։ Այդ իրողությունը բացահայտվեց Գրիգոր Բարխուդարյանի մահից երկու տարի անց, 1963 թ. նոյեմբերի 19-ին։ Նա գիտակցելով նրանց հնագիտական արժեքը, դրամները ձուլել էր ուրիշ արծաթից, ճիշտ նույն քաշով՝ մոտ մեկուկես կիլոգրամ։ Իրականում գորիսեցի արծաթագործը դարձել էր այդ գանձի նշանակալից մասի երկրորդ տերը։ Նրա մահից հետո, կրտսեր որդին՝ Սերյոժա Բարխուդարյանը, մեր համաձայնությամբ ներկայանում է թանգարանի դրամագիտության բաժին և հայտնում, որ հանգուցյալ հոր արհեստանոցում պահվում է 1945 թ. գտնված դրամների մի խումբ։ Այդ դրամները, թվով 176 հատ, Գորիսի Քաղաքային սովետի արձանագրությամբ հանձնվեցին Հայաստանի պատմության պետական թանգարանին։ Ըստ տեսակների դրանք ստորաբաժանվում են հետևյալ խմբերի.

| | |
|---|---|
| Հռոմեական | 115 դրամ |
| Սելևկյան | 24 » |
| Պարթևական | 14 » |
| Փյունիկյան | 10 » |
| Կապադովկիական | 5 » |
| Հայկական | 4 » |
| Պերգամյան | 2 » |
| Մակեդոնական | 2 » |

Ընդամենը 176 դրամ

[1] Հայաստանի պատմության պետական թանգարանի «Աշխատություններ», հատ. II, էջ 7—35, Երևան, Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչություն։

[2] *Пахомов*, VI, стр. 11.

*Համադրելով Սառնակունքի դրամագյուտից թանգարանում հավաքված դրամների ընդհանուր քանակը, կստանանք հետևյալ տվյալները.*

| Դրամներ | Ձեռք բերված | |
|---|---|---|
| | 1946—1948 թթ. | 1963 թ. |
| Հռոմեական | 103 դրամ | 115 դրամ |
| Սելևկյան | 30 » | 21 » |
| Փյունիկյան | 26 » | 10 » |
| Պարթևական | 8 » | 14 » |
| Պերգամյան | 4 » | 2 » |
| Հայկական | 3 » | 7 » |
| Կապադովկիական | 3 » | 5 » |
| Մակեդոնական | — » | 2 » |
| Պոնտական | 1 » | — |

*Ինչպես տեսնում ենք, իրենց հիմնական տեսակներով դրամները քանակապես ըստ խմբերի ստորաբաժանվում են համարյա նույն չափերով: Դրանցից բացի, 1964 թ. հոկտեմբերին, թանգարանը հայագետ Մորուս Հասրաթյանից ստացավ Սառնակունքի գանձից ծագած ևս 17 արծաթյա դրամ, որոնց մի մասը (11 հատ) տեղի բնակիչներից դեռևս 1948 թվականին ստացել էր պրոֆեսոր Աշոտ Աբրահամյանը: Մնացած 6 դրամները Մորուս Հասրաթյանը ձեռք էր բերել Սառնակունքում: Շատ չանցած, երբ հաղորդվել էին նոր տեղեկություններ գտնված գանձի կարևորության մասին[1], Գ. Բարխուդարյանի ավագ որդին՝ Ռուբեն Բարխուդարյանը[2] թանգարանին նվիրեց երկու արծաթյա հռոմեական դրամ: Այնուհետև 1966 թ. օգոստոսին Սառնակունքի գանձից սելևկյան մի արծաթ դրամ թանգարանին նվիրեց ուսանող Վ. Մահլամյանը, որը 1961 թվականին ստացել էր անդամի մի կնոջից:*

*Ուրիշ դրամներ Սառնակունքի գանձից թանգարանին դեռևս չեն հանձնվել: Սակայն կասկածից վեր է, որ ինչպես Զանգեզուրում, այնպես էլ նրա սահմաններից դուրս մինչև հիմա էլ ձեռքից-ձեռք անցած այդ գանձի դրամներից որոշ օրինակներ պահվում են առանձին մարդկանց մոտ, և, ցավոք, այդ նմուշների տվյալները, որ կարևոր նշանակություն ունեն ուսումնասիրության համար, մնում են անհայտ: Կարող է հարց առաջանալ, թե Հայաստանի թանգարանից բացի ուրիշ թանգարաններ չեն անցել արդյոք որոշ դրամներ: Հարկ է նշել, որ վերջերս մենք ստուգել ենք Բաքվի, Թբիլիսիի թանգարանները, ինչպես նաև Մոսկվայում և Լենինգրադում գործող գլխավոր թանգարանների դրամագիտական ֆոնդերը, սակայն դրամներ Սառնակունքի գանձից վերջին քսան տարիներին չեն արձանագրված:*

*Ի վերջո, ամփոփելով դրամների այն հավաքածուն, որ 1945—1947 թվականների ընթացքում ձեռք է բերվել Սառնակունքի գանձից և պահվում է Հայաստանի պատմության թանգարանում, բաժանվում է հետևյալ տեսակների.*

---

[1] *«Սովետական Հայաստան», Երևան, 1963 թ. դեկտեմբերի 4-ին. № 282.* „Коммунист", Ереван, 4 декабря 1963 г., № 283: „Вечерний Ленинград", 25 декабря 1963 г. *«Լրաբեր» երկօրյա թերթ, ԻԶ տարի, թիվ 50, Նյու-Յորք, 17 դեկտեմբերի 1963 թ.: «Զարթոնք», Բեյրութ, ԻԷ տարի, թիվ 90 (7824), ուրբաթ, 14 հունվարի 1964 թ.:*

[2] *Ռուբեն Բարխուդարյանի՝ թանգարանին նվիրած դրամները ստացվել են 1965 թ. հուլիսի 8-ին:*

| Արծաթ դրամներ | Քանակը |
|---|---|
| 1. Հռոմեական | 225 դրամ |
| 2. Սելևկյան | 58 » |
| 3. Փյունիկյան | 39 » |
| 4. Պարթևական | 22 » |
| 5. Հայկական | 10 » |
| 6. Կապադովկիական | 8 » |
| 7. Փոքրասիական քաղաքների (Պերգամոն, Էփեսոս) | 8 » |
| 8. Մակեդոնական | 2 » |
| 9. Պոնտական | 1 » |
| Ընդամենը | 373 դրամ |

## ԴՐԱՄՆԵՐԻ ԾԱԳՈՒՄԸ

*Մինչև օրս Հայաստանում գտնված հին դրամական գանձերի մեջ Սառնակունքի գանձը բացառիկ երևույթ է։ Իր մեջ ամփոփված դրամական միավորների ծագմամբ այն ներկայացնում է ուշ հելլենիստական դարաշրջանը և պատմական տվյալներ հաղորդում ոչ միայն Հայաստանի, այլև նրա հետ առնչված երկրների դրամների վերաբերյալ։ Նմանօրինակ պարունակության գանձ հայկական դրամագիտությանը հայտնի է դառնում առաջին անգամ։ Սառնակունքի գանձից այստեղ քննվող դրամները դասակարգվում են երկու հիմնական խմբի.*

*ա) Հելլենիստական միապետությունների դրամներ*

*բ) Հռոմեական հանրապետության դրամներ*

*Հելլենիստական միապետությունների դրամներն ստորաբաժանվում են.*

| | | | |
|---|---|---|---|
| *Ալեքսանդր* | *Մակեդոնացի (336—323)* | 2 | դրամ |
| *Սելևկյաններ* | *Ալեքսանդր* I *(150—145)* | 1 | » |
| » | *Դեմետրոս* II *(146—138)* | 9 | » |
| » | *Անտիոքոս* VII *(138—129)* | 17 | » |
| » | *Փիլիպոս* I *(92—83)* | 31 | » |
| *Արշակունիներ* | *Միհրդատ* I *(171—138)* | 1 | » |
| » | *Միհրդատ* II *(123—88)* | 1 | » |
| » | *Գոտարզ* I *(90—80)* | 2 | » |
| » | *Սանատրուկ* I *(77—70)* | 1 | » |
| » | *Միհրդատ* III *(57—54)* | 3 | » |
| » | *Օրոդես* II *(57—38)* | 14 | » |
| *Արտաշեսյաններ* | *Տիգրան* II *(95—55)* | 8 | » |
| » | *Արտավազդ* II *(56—34)* | 2 | » |
| *Կապադովկիա* | *Արիարաթ* IV *(220—163)* | 1 | » |
| » | *Արիարաթ* V *(163—130)* | 1 | » |
| » | *Արիոբարզան* I *(95—62)* | 6 | » |
| *Պոնտոս* | *Միհրդատ* VI *(120—63)* | 1 | » |

*Հիշյալ շարքին միանում են նաև քաղաքային դրամներ.*

| | | | |
|---|---|---|---|
| քաղաք | Տյուրոս, | մ. թ. ա. 1 դար | 37 դրամ |
| » | Սիդոն | » » | 1 » |
| » | Արադոս | » » | 1 » |
| » | Պերգամոն | » » | 6 » |
| » | Էփեսոս | » » | 2 » |

Ընդամենը՝ 148 դրամ

Տյուրոս քաղաքի ամենավաղ դրամը վերաբերում է մ. թ. ա. 93 թվականին, իսկ ամենաուշը՝ մ. թ. ա. 37 թվականին, ըստ որում տարեթվերի նշումներով դրանք ստորաբաժանվում են քանակային հետևյալ հարաբերությամբ.

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Տյուրոս քաղաքի | 33 | տարեթվով = մ.թ.ա. | 93 | թիվ | 1 տետրադրախմա |
| » | 37 | » | 89 | » | 1 » |
| » | 58 | » | 68 | » | 1 » |
| » | 50 | » | 76 | » | 1 » |
| » | 70 | » | 56 | » | 1 » |
| » | 71 | » | 55 | » | 1 » |
| » | 75 | » | 51 | » | 1 » |
| » | 78 | » | 48 | » | 2 » |
| » | 80 | » | 46 | » | 2 » |
| » | 81 | » | 45 | » | 5 » |
| » | 82 | » | 44 | » | 1 » |
| » | 83 | » | 43 | » | 1 » |
| » | 84 | » | 42 | » | 6 » |
| » | 86 | » | 40 | » | 1 » |
| » | 87 | » | 39 | » | 5 » |
| » | 88 | » | 38 | » | 3 » |
| » | 89 | » | 37 | » | 4 » |

Ընդամենը՝ 37 տետրադրախմա

Ինչպես տեսնում ենք, հելլենիստական 148 արծաթյա դրամներից ամենահինը թողարկվել է Ալեքսանդր Մակեդոնացու (336—323) իշխանության տարիներին, իսկ ամենաուշը՝ Հայոց Արտավազդ II թագավորի (56—34) օրոք։

Ակնառու է, որ հելլենիստական դրամների զգալի մասը կազմում են Սելևկյան թագավորության, ինչպես նաև փյունիկյան քաղաքների և պարթևական հարստության դրամները։ Մնացած միապետությունները ներկայացված են մեկից տասը միավորների չափով։ Ելնելով դրամների ծագման ժամանակագրական տվյալներից, նրանց բաշխումը ըստ հարյուրամյակների ցույց է տալիս հետևյալ հարաբերությունը.

| | | | |
|---|---|---|---|
| Մ.թ.ա. | IV | դարին վերաբերում են | 2 դրամ |
| » | II | » | 29 » |
| » | I | » | 117 » |

Հետևապես այդ դրամների մոտ 80 տոկոսը շրջանառության մեջ մտել է մ. թ. ա. I դարում։

*Եթե այնուհետև առանձնացնենք մ. թ. ա. I դարի բացարձակ տարեթիվ-ով դրամները և խմբավորենք նրանց ըստ տասնամյակների, ապա կստացվի.*

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| *Մ.* | *թ.* | *ա. I դարի* | *90-ական* | *թվականներին* | *վերաբերում* | *են* | *2* | *դրամ* |
| » | » | » | *80* | » | » | » | *3* | » |
| » | » | » | *70* | » | » | » | *9* | » |
| » | » | » | *60* | » | » | » | *2* | » |
| » | » | » | *50* | » | » | » | *5* | » |
| » | » | » | *40* | » | » | » | *18* | » |
| » | » | » | *30* | » | » | » | *13* | » |

*Նշանակում է այս գանձի հելլենիստական միապետությունների դրամական միավորների շարքում քանակապես գերակշռում են մ. թ. ա. I դարի դրամները, իսկ վերջիններիս մեջ առավելապես այն օրինակները, որոնք թողարկվել են 40—30-ական թվականներին։*

*Չնայած գանձի մեջ հավաքված ամենահին և ամենանոր դրամների միջև եղած ժամանակամիջոցը շուրջ 300 տարի է, բայց միջազգային ապրանքափոխանակության ասպարեզում նրանք գործել են միաժամանակ։ Ալեքսանդր Մակեդոնացու (336—323) դրախման ու տետրադրախման, ինչպես նաև սելևկյան Ալեքսանդր I Բալասի (150—145) տետրադրախման, թեև եզակի օրինակներով, սակայն շրջանառության մեջ են եղել հռոմեական հանրապետության, պարթևական և հայկական թագավորությունների մ. թ. ա. I դարի 30-ական թվականների արծաթյա դրամների հետ միաժամանակ։ Այդ տարբեր ժամանակների և տարբեր երկրների արծաթյա դրամների համատեղ ընդունելությունը պայմանավորված էր կշռային այն սիստեմով, որ բնորոշ է եղել հելլենիստական երկրների դրամական տնտեսության համար՝ IV—I դարերում։ Դատելով գանձում եղած ժամանակով ամենանոր դրամից, կարելի է ենթադրել, որ ողջ գանձը, իր ժամանակի համար խոշոր մի դրամագլուխ, թաղվել է հավանաբար մ. թ. ա. I դարի քսանական թվականների սկզբին։*

*Խմբավորելով գանձի դրամներն ըստ նրանց ծագման վայրերի, այսինքն՝ այն երկրների ու քաղաքների, որոնցից դրանք դուրս են եկել և մտել միջազգային շրջանառության մեջ, հնարավորություն է ընձեռվում դատելու Հայաստանի առևտրական կապերի այն հիմնական ուղղությունների մասին, որոնք եղել են մ. թ. ա. I դարի վերջերին, այսինքն՝ գանձի առավել նշանակալից կուտակման ժամանակ։*

*Հայտնի է, որ հելլենիստական դրամների վրա քաղաքների կամ նրանցում գործող փողերանոցների անունները նշվում էին հաճախ առանձին* մենագրերով, *որոնք մտնում էին ընդհանուր պատկերատիպի մեջ իբրև լրացուցիչ տարրեր։ Չնայած շատ մենագրեր մինչև օրս լրիվ բացահայտված չեն, սակայն նրանց տեսակների ընդհանուր հաշվառքը կարևոր է իմանալու, թե ինչպիսի նշաններով դրամներ են տեղ գտել գանձում և այդպիսիներից որոնք են, որ քանակապես առավել շատ են ներկայացված։*

*Ալեքսանդր Մակեդոնացու դրամների վրա, որոնք հելլենիստական պետությունների դրամական միավորների խմբում ամենահին վկայություններն են, տարաբախտաբար մենագրեր չեն պահպանվել։*

*Սելևկյան դրամների վրա հիշատակված են մենագրերի ավելի քան 20 տարբեր ձևեր, որոնցից մի քանիսը հայտնի են իբրև Անտիոք ☆ (տես՝ մե-*

*նագիր № 20) և Տյուրոս* ⚹ *(մենագիր № 2) քաղաքների անվան կրճատ գրություններ*[1]*։ Ուշագրավ է, որ սելևկյան Ալեքսանդր I Բալայի* △ OM AI *մենագրով տետրադրախման Հայաստանում հանդես է գալիս առաջին անգամ և ընդհանրապես հազվագյուտ օրինակներից է, եթե նկատի ունենանք, որ ո՛չ Բրիտանական թանգարանի և ո՛չ էլ Փարիզի ազգային մատենադարանի հարուստ ժողովածուների հրապարակված նմուշների մեջ այդ միապետի հիշյալ մենագրով տետրադրախմա չկա։ Սելևկյան Դեմետրոս II Նիկատորի բոլոր դրամներն էլ (9 տետրադրախմա) կտրվել են փյունիկյան Տյուրոս քաղաքում։ Վաճառաշահ այդ նույն քաղաքում են դրվագված նաև սելևկյան Անտիոքոս VII Էվերգետոսի 17 տետրադրախմաներից երեքը (տե՛ս դրամներ № № 12—14)։*

*Անտիոքոս VII Էվերգետոսի մի քանի տետրադրախմաներ թողարկված են* ♀ ATA *մենագրերով (տե՛ս դրամներ № № 15—22) և կամ միայն* ♀ A *մենագրով, որոնք ընդհանրապես առավել բնորոշ են այդ միապետի դրամների համար։ Ուշագրավ է, որ գանձում առկա են Անտիոքոս VII Էվերգետոսի պատկերով նաև այնպիսի տետրադրախմաներ, որոնց մենագրերը բոլորովին նոր են.*

| | | | |
|---|---|---|---|
| ♀ AM | *տե՛ս դրամ №* | *23* |
| ♀ Λ ΤΙ ΙΛ | » | *24* |
| ♀ Λ Τ | » | *28* |

*Հիրավի, ո՛չ այժմյան Հայաստանում և ո՛չ էլ նրան մերձավոր անդրկովկասյան երկրներում նման համադրությամբ մենագրեր՝ սելևկյան Անտիոքոս VII Էվերգետոսի տետրադրախմաների վրա, մինչև օրս չեն հայտնաբերվել։ Իսկ եթե նկատի ունենանք սելևկյան դրամների՝ եվրոպական թանգարանների հրատարակած ժողովածուները, ապա կարող ենք ասել, որ իրոք այդ նշանագրերը նորություններ են։*

*Ուշագրավ են նաև սելևկյան Փիլիպոս I Ֆիլադելփոսի դրամների վրա նըշված մենագրերը։ Ընդհանուր առմամբ դրանք արտահայտված են հետևյալ ձևերով.*

| | | | | |
|---|---|---|---|---|
| ΑΝ | ⚹ | | *տե՛ս դրամ №№* | *56—58* |
| ✡ | Ѧ | △ | » | *54* |
| Φ | Ѧ | AT | » | *48* |
| Φ | Ѧ | AΓ | » | *46, 47* |
| Φ | Ѧ | T | » | *44, 45* |
| I | Ѧ | Π | » | *41* |
| I | Ѧ | ☉ | » | *39, 40* |
| N | Ѧ | | » | *42, 43* |
| Λ | Ѧ | | » | *55* |
| ☉ | Ѧ | | » | *53* |
| | Ѧ | | » | *29, 30* |
| | Ѧ | Π | » | *33, 35* |
| | Ѧ | Τ | » | *32, 50* |
| | Ѧ | Λ | » | *51* |
| | Ѧ | Ξ | » | *49* |

[1] *Gardner*, p. XXIX—XXXIII; BN, p. CLXXVI—CLXXXII.






Իրան, Արշակունի Միհրդատ I, 171—137 թթ.։

Արծաթե դրամ, մեծացված 3×






*Սելևկյան, Ալեքսանդր I Բալաս, մ. թ. ա. 146 թ.։*
*Տետրադրախմա, մեծացված 3×*





Սելևկյան Դեմետրոս II Նիկատոր, մ. թ. ա. 128 թ.։
Տետրադրախմա. մեծացված 3×





*Սելևկյան Անտիոքոս VII Էվերգետոս, մ. թ. ա. 138—129 թթ.։*
*Տետրադրախմա, մեծացված 3×*





*Սելևկյան Փիլիպպոս I Փիլադելփոս, մ. թ. ա. 92—83 թթ.։*
*Տետրադրախմա, մեծացված 3×*






Տյուրոս քաղաքի դրամը, մ. թ. ա. 68 թ.։
Տետրադրախմա, մեծացված 3×






Արադոս քաղաքի դրամը, մ. թ. ա. I դար։
Տետրադրախմա, մեծացված 3×





*Սիդոն քաղաքի դրամը, մ. թ. ա. 39 թ.։*
*Տետրադրախմա, մեծացված 3×*

Վերոհիշյալներից Հայաստանի և նրան հարևան անդրկովկասյան երկրների համար նորություն են այն տետրադրախմաները, որոնք թողարկված են հետևյալ մենագրերով.

| | | | | |
|---|---|---|---|---|
| ΔΤΛ | | ! | տե՛ս դրամներ №№ | 56—58 |
| Φ | Λ | ΑΤ | » | 48 |
| Φ | Λ | Τ | » | 44, 45 |
| Φ | Λ | ΑΓ | » | 46, 47 |
| Ι | Λ | Π | » | 41 |
| ⊙ | Λ | | » | 53 |
| | Λ | Τ | » | 32, 50 |
| | Λ | Λ | » | 51 |

Հայկական ՍՍՀ տերիտորիայում առաջին անգամ հաստատագրված այս կարգի սելևկյան տետրադրախմաներից զուրկ են շատ հարուստ դրամագիտական հավաքածուներ, եթե նկատի ունենանք Բրիտանական թանգարանի, Փարիզի ազգային մատենադարանի հրապարակված ցուցակները, ինչպես նաև պետական էրմիտաժի (Լենինգրադ), Մոսկվայի, Օդեսայի, Բաքվի և Թբիլիսիի թանգարանների անտիկ դրամների ժողովածուները։ Սելևկյան Փիլիպոս I Ֆիլադելփոսի (92—83) հիշյալ տետրադրախմաները թողարկվել են մինչև հայոց զորքերի կողմից Սիրիայի գրավումը՝ Տիգրան Մեծի օրոք և, ամենայն հավանականությամբ, պետք է, որ կտրված լինեն Անտիոքի և Տյուրոսի փողերանոցներում։ Միջերկրականի փյունիկյան ափին առևտրական նշանավոր Տյուրոս քաղաքը լինելով սելևկյան դրամների թողարկման գործոն կենտրոններից մեկը, այս գանձի մ. թ. ա. 90—35 թվականների իր տետրադրախմաներով ներկայացնում է մենագրերի բազմատեսակ ձևեր.

| | | | |
|---|---|---|---|
| ΒΝ | Ϙ | տե՛ս դրամներ №№ | 74, 76 |
| ΤΒ | » | » | 64, 77 |
| ΔΙ | » | » | 69, 71 |
| Ϙ | » | » | 62, 73 |
| Ξ | » | » | 88, 89 |
| ΖΝ | » | » | 93, 96 |
| ΑΓ | » | » | 83, 85 |
| ΒΝ | » | » | 70, 72 |

Բացի սրանցից, մեկական օրինակներով տյուրոսյան տետրադրախմաների վրա նշված են △—F (դրամ № 61) և ΗΓ Λ (դրամ № 60) փակագրերն ու մենագրերը։ Ի տարբերություն տետրադրախմաներով այսքան առատորեն ներկայացված Տյուրոսից, փյունիկյան մնացած քաղաքները, մասնավորապես Սիդոնը և Արադոսը, գանձում ներկայացված են եզակի նմուշներով։

Սիդոնի տետրադրախման թողարկված է քաղաքի տեղական տարեթվի հիշատակությամբ (LB—O) և երկու փակագրերով ΑΙ ΗΙ (տե՛ս դրամ № 97), մինչդեռ Արադոսից դուրս եկած տետրադրախման անտարեթիվ է և ունի փյունիկյան գրեր (մանրամասնությունները տե՛ս դրամ № 98)։

Գանձի պարթևական դրամները հատվել են արշակունյաց Իրանի տարբեր քաղաքներում, սակայն նրանց մենագրերը արտահայտված են միայն Միհրդատ I (171—138), Միհրդատ III (57—54) և Օրոդես II (57—38) թագավորների իշխանության տարիներին թողարկված անտարեթիվ դրախմաների վրա։

Նկատի առնելով պարթևական դրամները, կարելի է տեսնել նրանց՝ հունատառ սկզբունքով կազմված հետևյալ մենագրերը.

| | | | |
|---|---|---|---|
| [monogram] | | տե՛ս դրամ № | 110 |
| B | [monogram] | » | 105 |
| [monogram] | [monogram] | » | 120 |
| [monogram] | [monogram] | » | 115 |
| [monogram] | [monogram] | » | 118 |
| [monogram] | | » | 112 |
| [monogram] | | » | 107 |
| [monogram] | | » | 114 |
| Λ | | » | 117 |
| K | | » | 109 |
| Π | | » | 106 |
| [monogram] | | » | 104 |
| C | | » | 99 |

Պարթևական այս մենագրերի մեծագույն մասը լայնորեն հայտնի է գրականության մեջ և տեղագրական առումով բնորոշ է Հայաստանի և նրան հարևան երկրների համար։

Հազվագյուտ վկայություն կարելի է համարել միայն վաղ պարթևական շրջանի դրախման (№ 99), որի վրա նշված է C մենագիրը։ Իր ծագման ժամանակով այն վերաբերում է մ. թ. ա. II դարին։ Հայաստանում նմանօրինակ դրախմայի հայտնագործումն արձանագրվում է առաջին անգամ։

Դատելով դրամագյուտերի տվյալներից, կարելի է նշել, որ ինչպես Հայաստանում, այնպես էլ նրան հարևան երկրներում վաղ պարթևական դրամներն ընդհանրապես հազվագյուտ են։ Այդ հետևությունը հաստատվում է այն իրողությամբ, որ վաղ պարթևական դրամների հիմնական տեսակները հարուստ ժողովածուներում անգամ ներկայացված են հատ ու կենտ նմուշներով։ Վերոհիշյալ պարթևական դրամների մի մասը, հատկապես այն դրախմաները, որոնց վրա հիշատակված են [monogram], [monogram], K մենագրերը, դրվագվել են Տիգրիսի Սելևկիա և Տիզբոն քաղաքներում, ինչպես նաև Միհրդատակերտի [monogram] և այլ փողերանոցներում[1]։

Մնացած ([monogram], [monogram], C, Π, B) մենագրերով պարթևական դրախմաների ծագման վայրերը մեզ համար դեռևս անհայտ են։

Ինչ վերաբերում է դրամների կապադովկիական խմբին, ապա դրանցից մասնավորապես Արիարաթ IV Եվսեբես (220—163) և Արիարաթ V Փիլոպատոր (163—130) թագավորների դրախմաները Հայկական ՍՍՀ տերիտորիա-

---

[1] *Wroth*, p. LXXVIII—LXXXVII.

*յում հազվադեպ են։ Առավել հաճախ հանդիպում են Արիոբարզան I Ֆիլոռոմայոսի (95—62) դրամները, որոնք շրջանառության մեջ մտել են այն տարիներին, երբ Հայաստանում առատորեն թողարկվում էին Տիգրան Մեծի դրամները։ Սակայն այս գանձից հայտնի Արիոբարզան I-ի դրախմաները Հայաստանի համար նորություն են, մանավանդ իրենց վրա ունեցած մենագրերով.*

| | | | |
|---|---|---|---|
| [monogram] | M | *տե՛ս դրամ №* | *134* |
| [monogram] | | » | *135* |
| [monogram] | | » | *136* |
| [monogram] | | » | *137* |

*Եթե նկատի ունենանք անգամ Բրիտանական թանգարանի հրատարակությունները, նվիրված Կապադովկիայի դրամներին, ապա նույնպես կարող ենք նշել, որ Արիոբարզան I-ի իշխանության տարիներին թողարկված հիշյալ մենագրերով դրախմաները իրոք անտիկ դրամների հազվագյուտ նմուշներից են։ Մինչդեռ* [monogram] *մենագրով այդ նույն միապետի դրախմաները (№ № 138, 139) նորություն չեն Հայաստանում և ավելորդ անգամ վկայում են իրենց համեմատաբար շատ տարածված լինելու մասին։ Ընդհանուր առմամբ, Կապադովկիայի այս դրամները դրվագվել են նրա մայրաքաղաք Մաժակում (Մազաք)։*

*Ինչ վերաբերում է գանձի հայկական դրամներին՝ թողարկված Արտաշեսյան արքաներ Տիգրան Մեծի (95—56) և նրա որդու՝ Արտավազդ II-ի (56—34) իշխանության տարիներին, ապա նրանց մենագրերի բազմատեսակությունը դրոշմված է միայն Տիգրան Մեծի տետրադրախմաների և դրախմաների վրա։ Դրանք դրվագվել են ինչպես Սիրիայում, մանավանդ վերջինիս մայրաքաղաք Անտիոքում, այնպես էլ բուն Հայաստանում։*

*Անտիոքի փողերանոցից են դուրս եկել Տիգրան Մեծի երկու տետրադրախմաներն իրենց հունատառ դրության տարբեր՝* ⳁ *և* [monogram] *մենագրերով (տե՛ս դրամներ № № 121, 122)։ Հայաստանում դրվագված տիգրանյան դրամների վրա նշված են.*

| | | | | |
|---|---|---|---|---|
| EΛ | Λ | ΞC | *տե՛ս դրամ №* | *123* |
| ϛΛ | H | ΞC | » | *126* |
| ZΛ | Λ | ΞK | » | *128* |

*Ինչպես նաև միայն* ZΛ *և* ΞC *մենագրերով (դրամ № 127)։*

*Տիգրան Մեծի մնացած երկու դրամների վրա, ցավոք, մենագրերը չեն պահպանվել (տե՛ս դրամներ № № 124, 125)։ Հայաստանում Տիգրան Մեծի օրոք դրամները թողարկվում էին գլխավորապես Արտաշատում և Տիգրանակերտում*[1]*։ Արտաշատի փողերանոցից են դուրս եկել նաև գանձում եղած Արտավազդ II-ի դրախմաները՝ իրենց միատեսակ մենագրերով*[2]*։*

*Հայաստանի համար դրամագիտական կարևոր վկայություն է պոնտական տետրադրախման (№ 131)։ Ի տարբերություն տիգրանյան դրախմաների*

---

[1] *Head*, 772; *Seyrig*, 114, 121.

[2] **Խ. Մուշեղյան,** *Արտավազդ II-ի չորեքդրամյանը, էջ 322 (Հայկական ՍՍՀ ԳԱ-ի Պատմաբանասիրական հանդես, 2, Երևան, 1964)։*

ու տետրադրախմաների, ինչպես նաև նրանց ժամանակակից պարթևական ու հռոմեական դրամների, պոնտական դրամները, մասնավորապես Միհրդատ VI Եվպատորի տետրադրախմաները, Հայաստանում հազվադեպ են։ Այս օրինակը, որի հայտնաբերումը արձանագրվում է առաջին անգամ, ուշագրավ է ինչպես իր տարեթվի՝ C K Σ (226 բոսֆորյան տոմարի = մ. թ. ա. 71 թիվ), այնպես էլ փակագրի՝ [illegible] ու մենագրի՝ A հիշատակությամբ, որոնք նորություն են Պոնտոսի և Բոսֆորի միացյալ թագավորության դրամների համար։

Իրենց ծագմամբ միանգամայն որոշակի են Պերգամոնի և Էփեսոսի արծաթյա կիստոֆորները, որոնց վրա կրճատ ձևով, բայց հստակորեն հիշատակված են փոքրասիական այդ նշանավոր քաղաքների անունները (տե՛ս դրամներ №№ 140—145, 146—147)։

Պերգամոնի կիստոֆորները թողարկված են AM, AP, KP, TP մենագրերով և երկու՝ մշտապես նույն տեղերում հիշատակվող, փակագրերով [illegible], [illegible]։ Այդ դրամների շարքում մի տարբերակի վրա նշված է միայն [illegible] փակագիրը (տե՛ս դրամ № 145)։ Էփեսոսում դրվագված կիստոֆորների վրա քաղաքի անունը ներկայացված է հունարեն ΕΦΙ և վերևից ΞΖ (№ 146) և կամ Ξ[ գրերով (№ 147)։

Այսպիսով, հելլենիստական միապետությունների դրամներն ըստ ծագման պատկանում են հետևյալ երկրներին.

| | | |
|---|---|---|
| Մակեդոնիա | 2 | դրամ |
| Սիրիա | 58 | » |
| Փյունիկիա | 39 | » |
| Իրան | 22 | » |
| Հայաստան | 10 | » |
| Կապադովկիա | 8 | » |
| Պոնտոս | 1 | » |

Հռոմեական դրամական միավորները մեծ մասամբ դրվագվել են բուն Հռոմում, որի փողերանոցներից դուրս են եկել և շրջանառության մեջ մտել գանձում հավաքված 138 դենարները։

Բացի դրանից, որոշ քանակությամբ դրամներ թողարկվել են հռոմեական տիրակալության ծայրամասերում։

| | | |
|---|---|---|
| Փոքր Ասիա | 46 | դրամ |
| Գալլիա | 18 | » |
| Իտալիա | 12 | » |
| Աֆրիկա | 8 | » |
| Հունաստան | 5 | » |
| Սիցիլիա | 3 | » |
| Արևելք | 2 | » |
| Իսպանիա | 1 | » |

Հռոմեական դրամների ժամանակագրական խմբավորումը ցույց է տալիս, որ նրանց մեծագույն, գրեթե ամբողջության հասնող մասը (96 %) պատկանում է մ. թ. ա. I դարին։ Այդ զանգվածը ստորաբաժանելով ըստ տասնամյակների, գանձում կարելի է տեսնել հռոմեական դրամների հետևյալ քանակական կուտակումները.

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Մ. թ. ա. I դարի | 90-ական | թվականներին | վերաբերում | են 6 | դրամ |
| » | 80 | » | » | 13 | » |
| » | 70 | » | » | 7 | » |
| » | 60 | » | » | 25 | » |
| » | 50 | » | » | 29 | » |
| » | 40 | » | » | 106 | » |
| » | 30 | » | » | 30 | » |

Բացահայտ է, որ այս հատվածում ևս գերակշռում են մ. թ. ա. I դարի 40-ական թվականների դրամները։

Ի մի բերելով ողջ գանձից մեզ հասած դրամական միավորների ժամանակագրական հարաբերակցությանը վերաբերող տվյալները, կարող ենք նշել.

| | | | | |
|---|---|---|---|---|
| Մ. թ. ա. | IV դարին | վերաբերում | են 2 | դրամ |
| » | II | » | 39 | » |
| » | I | » | 332 | » |

Իսկ այդ վերջինների՝ 332 դրամների տարաբաժանումը տասնամյակներով արտահայտվում է հետևյալ կերպ.

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Մ. թ. ա. I դարի | 90-ական | թվականներին | վերաբերում | են 6 | դրամ |
| » | 80 | » | » | 48 | » |
| » | 70 | » | » | 18 | » |
| » | 60 | » | » | 29 | » |
| » | 50 | » | » | 38 | » |
| » | 40 | » | » | 133 | » |
| » | 30 | » | » | 48 | » |

Ելնելով վերոհիշյալներից կարող ենք արձանագրել, որ գանձի 373 դրամներից 332-ը, այսինքն՝ մոտ 80,54%-ը, ծագել են մ. թ. ա. I դարում և այդ գերակշռող զանգվածի մեջ ամենամեծ բաժինը ներկայացնում են 40-ական թվականներին թողարկված դրամները։

Ի վերջո խմբավորելով գանձից մեզ հասած բոլոր դրամները, ըստ նրանց ծագման վայրերի (փողերանոցների), որոնց անունները լրիվ կամ կրճատ նշված են և կամ հայտնի են պատկերատիպերով, պարզվում են հետևյալ տվյալներով.

| | | |
|---|---|---|
| Հռոմից | 138 | դրամ |
| Անտիոքից | 58 | » |
| Տյուրոսից | 48 | » |
| Էփեսոսից | 32 | » |
| Մաժակից | 8 | » |
| Տիզբոնից | 6 | » |
| Պերգամոնից | 6 | » |
| Տիգրանակերտից | 6 | » |
| Արտաշատից | 6 | » |
| Սելևկիայից | 2 | » |
| Միհրդատակերտից | 2 | » |

| | | |
|---|---|---|
| Սիդոնից | 1 | դրամ |
| Ամիսոսից | 1 | » |
| Արադոսից | 1 | » |
| Անորոշ | 58 | » |

Անորոշ են մնում մասամբ Հռոմի տիրապետության տակ եղած արևելյան ու փոքրասիական ծայրամասերի և արշակունյաց Իրանի մի քանի քաղաքների անունները, որոնք նույնպես ունեին փողերանոցներ։

Սակայն այս տվյալներն էլ բավական են, որ մեր առաջ ուրվագծվի միջազգային առևտրի այն ոլորտը, որի մեջ ընդգրկված էր Հայաստանը մ. թ. ա. I դարի վերջին։

# ԴՐԱՄՆԵՐԻ ՊԱՏԿԵՐԱՏԻՊԸ

## 1. ՀԵԼԼԵՆԻՍՏԱԿԱՆ ԴՐԱՄՆԵՐ

Պատկերատիպի բնորոշ տվյալներով հելլենիստական դրամների վաղագույն օրինակները գանձի մեջ ներկայացված են Ալեքսանդր Մակեդոնացու մեկ տետրադրախմայով և մեկ դրախմայով (№ № 1, 2)։ Չնայած դրանք ամենավատ պահպանված դրամական միավորներն են, բայց իրենց վրա ունեցած պատկերների հիմնական գծերով յուրահատուկ են Ալեքսանդր Մակեդոնացու կայսրության մեջ լայնորեն հայտնի և հելլենիստական աշխարհում ամենուրեք տարածված արծաթյա դրամներին, որոնց տիպականությունը շատ ավելի լավ պահպանված բազմաթիվ նմուշներով արտացոլված է մասնագիտական գրականության մեջ[1]։ Պատկերատիպի թեմատիկ իմաստով դրանք հունական աշխարհի այն դրամներն են, որոնց վրա առաջին անգամ ներկայացվեցին միապետի իրական դիմագծերը։ Մինչև Ալեքսանդր Մակեդոնացին (336—323) հույների կյանքում այդ երևույթը բացառված էր, որովհետև ինչպես արխաիկ այնպես էլ դասական ժամանակաշրջանի դրամների վրա դրոշմում էին միայն պաշտամունքային պատկերներ։ Ալեքսանդր Մակեդոնացու օրոք խախտվեց այդ կանոնը և դրամի առաջին երեսին ներկայացվեց միապետի դիմանկարը։ Սակայն Ալեքսանդրի դիմանկարը պատկերված է ոչ բացահայտ, այլ առասպելական հերոս Հերակլեսի կերպարանքով, նրա կուռքին բնորոշ ատրիբուտով (գլխին առյուծի մորթի)։ Դրամի մյուս երեսին պատկերված է աստվածների հայր Զևսը՝ բազմած գահին։ Հերակլեսի պաշտամունքը լայն տարածում ուներ Հունաստանում և մասնավորապես Մակեդոնիայում։ Նրա պատկերով դրամներ թողարկվում էին դեռևս մինչ Ալեքսանդր Մակեդոնացին։ Նորություն չէր նաև հեթանոսական կրոնի գերագույն աստծո՝ Զևսի պատկերը, որով մինչ այդ զարդարված էին հունական աշխարհի շատ դրամներ։ Ալեքսանդր Մակեդոնացուց հետո, անտիկ աշխարհում միապետի դիմակներով դրամների թողարկումը դարձավ տիրապետող և հետագայում գրեթե դուրս մղեց դիցաբանական պատկերները[2]։

[1] *L. Müller*, Numismatique d'Alexandre le Grand, Basel—Stuttgart, 1957.

[2] *Зограф*, 72.

Գանձում սելևկյան դրամները ներկայացված են միապետների դիմանկարներով, որոնք արտահայտված են ռեալիստական ոճով։ Ալեքսանդր I Բալասի դիմանկարը (տե՛ս դրամ № 3) որոշակիորեն տարբերվում է սելևկյանների հարստության մնացած ներկայացուցիչներից, թեև բոլորն էլ պատկերված են կիսադեմ, գանգրահեր գլուխներով, արքայական վարսակալ ժապավեններով և հայացքով միշտ դեպի աջ։ Ալեքսանդր I Բալասի տետրադրախմայի երկրորդ երեսի կենտրոնում ցույց է տրված Զևսի կերպարը հաղթանակի արձանիկով, որի շուրջ հիշատակված են միապետի անունն ու տիտղոսը, տարեթիվը և փակագիրը։ Դեմետրոս II Նիկատորի (146—138) դրամների վրա (№ № 4—11) փորագրիչ-քանդակագործը պատկերել է միապետին մանկամարդ դիմագծերով։ Այդ հանգամանքը հասկանալի է դառնում, եթե նկատի ունենանք, որ պահպանվել են սելևկյան այդ միապետի հասուն տարիքի դիմանկարներով դրամները՝ թողարկված նրա իշխանության երկրորդ շրջանում (130—125), երբ Դեմետրոս II-ը ազատագրվել էր պարթևական գերությունից[1]։ Հիշյալ միապետի դրամներից միայն մեկ օրինակի երկրորդ երեսին (տե՛ս դրամ № 4) պատկերված է Ապոլլոնը՝ ձեռքին նետ ու աղեղ, իսկ նրա շուրջը արքայի տիտղոսի և տարեթվի (մ. թ. ա. 144 թ.) հիշատակությունն է։ Մինչդեռ մնացած օրինակների հակառակ կողմի կենտրոնում պատկերված է հուժկու մի արծիվ, շուրջը՝ արքայի անունը, առանց տիտղոսի։

Դեմետրոս II-ի այս կարգի արծվակիր դրամները՝ թողարկված մ. թ. ա. 146—138 թվականներին, ավելի շատ են, քան նրա դիցաբանական բնույթի դրամները։ Այս գանձում այդ գերակշռությունն արտահայտված է 1 : 6 հարաբերությամբ։

Ինչպես երևում է գանձի տվյալներից, այդ պատկերատիպը հետագայում լրիվ պահպանվել է սելևկյան հաջորդ միապետի՝ Անտիոքոս VII Էվերգետեսի մի քանի դրամների վրա (տե՛ս № № 12—14), ընդ որում դրանցից մեկը (№ 12) առաջին երեսին ունեցած արքայական դիմանկարով հար և նման է Դեմետրոս II Նիկատորի դրամներին (տե՛ս նաև № 7)։ Այդ իրողությունը թելադրում է հետևություն անել այն մասին, որ հավանաբար փողերանոցում օգտագործել են անցյալից մնացած հին կնիքը, որը պատրաստված է եղել դեռևս Դեմետրոս II-ի իշխանության տարիներին։ Սակայն այդ օրինակը բացառություն է։ Անտիոքոս VII Էվերգետեսի դրամների մեծ մասը (№ № 15—28) իրենց երկրորդ կողմի պատկերատիպի թեմատիկայով որոշակիորեն տարբերվում են նախորդներից։ Նախ և առաջ դրանք բոլորն էլ թողարկված են առանց տարեթվերի հիշատակության։ Որպես կենտրոնական կերպար ներկայացնում են Աթենասին, նրա պաշտամունքի ատրիբուտներով՝ սաղավարտով, վահանով ու նիզակով, ձեռքին հաղթանակի թևավոր աստվածուհու արձանիկը։ Անտիոքոս VII Էվերգետեսը պատկերված է երիտասարդի դիմագծերով, երբեմն ընդգծված արծվաքիթ ու գիրուկ երեսով, գլխի վարսերի խոշոր փնջերով, որոնց միջից նշմարվում է արքայական ժապավենը։ Այդ դրամները բոլորն էլ դրոշմված են տարբեր կնիքներով, ուստի արգասիք են փորագրական տարբեր կատարումների։ Նրանց համեմատությունը միմյանց հետ բացահայտում է շուրջ տասը զանազանություններ[2]։ Գանձում առավել ստվար խմբով են ներկայացված Սելևկյան

[1] BN, 153 №№ 1177—1260, pl. XIX XXII.

[2] Տե՛ս դրամներ № № 15, 16, 24 և № № 18, 19, № № 17—20 և № № 21, 22, 23, 25, 27, 28։

միապետության վերջին արքաներից Փիլիպոս I Ֆիլադելփոսի (92—83) դրամները, որոնք ունենալով նույն կանոնիկ տեսքը (մի կողմում միապետի գլուխը, մյուսում՝ դիցաբանական կերպարը), իրենց երկրորդ երեսի թեմատիկայով կրկնում են Ալեքսանդր I Բալայի (150—145) դրամների պատկերատիպը։

Միապետի դիմանկարի արտահայտման տեսակետից Փիլիպոս I Ֆիլադելփոսը դրամների վրա ներկայացված է առավել շեշտված դանդաղաշերտությամբ. խոշոր դիմագծերով, մերթ դեպի վեր կլորացող երեսով, լայնաբաց աչքերով ու ցցուն քթով, մերթ խոժոռ ու աճարկու (№ 52) և մերթ թեթևակի ժպտերես (№ № 54, 58), ինչպես նաև համեմատաբար խաղաղ հայացքով (№ 56)։ Դիմանկարների այս տարբերակներն արտացոլում են կնիքների պատրաստման գործում փորագրչության տարբեր կատարումները, որոնք բնորոշ են հելլենիստական գեղարվեստի ռեալիստական ոճին։ Երկրորդ կողմի կենտրոնում միապետի դրամների վրա ընտրված է Զևսի կերպարը՝ բազմած բարձրանիստ գահին, պսակաբեր Հաղթանակի արձանիկը աջ ձեռքում։ Փորագրիչ-քանդակագործին հաջողվել է տեղավորել սելևկյան այս միապետի ոչ միայն անվան՝ ΒΑΣΙΛΕΩΣ | ΦΙΛΙΠΠΟΥ, այլև տիտղոսի խորագիրը՝ ΕΠΙΦΑΝΟΥ || ΦΙΛΑΔΕΛΦΟΥ (Հռչակավոր || եղբայրասեր) և այդ ամենից բացի որոշ օրինակների վրա ցույց տալ առանձին փակագրեր ու մենագրեր (տե՛ս դրամներ № № 37—59)։ Սելևկյան դրամների վրա միապետների դիմանկարներն ամփոփված են երիզափակ շրջանակների մեջ, որոնք կա՛մ կետավոր են, կա՛մ էլ բաղկացած երկարավուն, գարեհատիկաձև ուլունքներից՝ իրարից բաժանված գնդաձև ուլունքներով։ Այդ ձևի երիզափակ շրջանակները բնորոշ են մասնավորապես Դեմետրոս II Նիկատորի (տե՛ս դրամ № 4) և հատկապես Փիլիպոս I Ֆիլադելփոսի դրամների պատկերատիպին (տե՛ս դրամներ № № 29—59)։

Ինչպես տեսանք, գանձի փյունիկյան դրամների շարքում մի ստվար խումբ են կազմում Տյուրոս քաղաքի տետրադրախմաները, որոնց մի կողմի վրա երևում է Հերակլեսի՝ Մելկարթի կիսադեմ գլուխը, զարդարված դափնեպսակով, մյուս կողմի վրա՝ արծիվը, շրջապատված տարբեր խորհրդանշաններով՝ փակագրեր, տարեթվեր, ինչպես նաև հունարեն խորագրեր։ Տյուրոս քաղաքում հեթանոսական աստվածություններից ամենապաշտելին համարվել է Մելկարթ-Հերակլեսը, որի կուռքը արևի պաշտամունքի հետ էր կապված։ Նրա պատկերը դրամների վրա արտահայտված է կնիքների փորագրչական վեց տարբերակներով (տե՛ս դրամներ № № 60, 61, 62, 63, 65 և 64, 66—96)։ Այդ տետրադրախմաներն իրենց հակառակ կողմերի վրա ունեցած պատկերների, նշանների ու խորագրերի ընդհանուր ձևավորմամբ արտացոլում են անմիջական կապակցությունը Սելևկյան պետության, մասնավորապես Դեմետրոս II Նիկատորի, ինչպես նաև Անտիոքոս VII Էվերգետոսի դրամների հետ (տե՛ս № № 5—11, 12—14)։ Ուշագրավ է, որ ինչպես սելևկյան, այնպես էլ Տյուրոս քաղաքի տետրադրախմաների շարքում. նույն կնիքներով դրվագված դրամներ չկան։

Փյունիկյան մյուս երկու քաղաքներից՝ Սիդոնից և Արադոսից մեզ հասած մեկական տետրադրախմաները, իրենց պատկերատիպերով, որոշակիորեն տարբերվում են Տյուրոս քաղաքի դրամներից։ Այդ տետրադրախմաների առաջին երեսների վրա պատկերված են հիշյալ քաղաքների պաշտպանության ու բարեկեցության մայր աստվածուհու մեծադիր կիսանդրիները (տե՛ս դրամներ № № 97, 98), որոնց նախատիպը հանդիպում է Տիգրան Մեծի դրամների վրա, այն

*տարբերությամբ միայն, որ այդ աստվածուհու կերպարը ներկայացված է ամբողջական տեսքով: Որպես քաղաքի պաշտպանության խորհուրդ, աստվածուհին ինչպես միշտ, այստեղ ևս պատկերված է բրգաձև թագով, որը նույնպես ընդգծում է հունական և փյունիկյան հելլենիստական դրամների ձևավորման միջև գոյություն ունեցող թեմատիկ առնչությունը: Սիդոնի տետրադրախմայի երկրորդ երեսի պատկերատիպը նման է ինչպես սելևկյան, այնպես էլ Տյուրոս քաղաքի դրամներին: Կենտրոնական խորհրդանշանն արծիվն է, որի երկու կողմերում ցույց են տրված փակագրեր և տարեթիվը՝* LB=72=*մ. թ. ա. 39 թիվ:*

*Ի տարբերություն Սիդոնի, փյունիկյան Արադոս քաղաքը իր տետրադրախմայի (№ 98) երկրորդ երեսի վրա պատկերել է Հաղթանակի թևավոր աստվածուհուն՝ կանգնած, ամբողջական տեսքով: Հելլենիստական դարաշրջանի դրամների վրա այս պատկերատիպը հաճախ է հանդիպում, օրինակ՝ Հայաստանում Տիգրան Մեծի և Արտավազդ II-ի պղնձյա դրամների վրա*[1]*:*

*Գանձում եղած պարթևական դրամները շուրջ մեկ հարյուրամյակի տևողությամբ ներկայացնում են մեզ Իրանի Արշակունյաց դրախմաների պատկերատիպը: Ինչպես արքայական դիմանկարների, այնպես էլ նրանց վերաբերող խորագրերի ու զարդարանքների ձևավորմամբ դրանք հիմնականում միօրինակ են: Հայաստանում շրջանառության մեջ եղած հելլենիստական դրամների շարքում պարթևական պատկերատիպը այս գանձի մեջ ճանաչելի է դառնում անմիջապես: Արքայական կիսադեմ գլուխները որպես կանոն ուղղված են միշտ դեպի ձախ. դրամների հակառակ կողմերի վրա, կենտրոնում նստած դիրքով դեպի աջ ներկայացված է Արշակունյաց տոհմի նահապետը՝ վեղարաձև գլխարկով, ձեռքին աղեղ: Այդ սխեման համատարած է, իսկ մասնակի փոփոխությունները, որոնք հանդես են գալիս տարբեր դրամների վրա, վերաբերում են արքաների արդուզարդին, մազերի ու մորուքի սանրվածքին, խորագրերին ու խորհրդանշաններին: Միայն մեկ դրախմա իր վրա ունեցած արքայական դիմանկարի յուրօրինակությամբ տարբերվում է բոլոր մնացածներից: Այդ դրախման (№ 99) վերաբերում է պարթևական պետության վաղ շրջանին: Միապետը պատկերված է վեղարաձև գլխարկով և սափրված երեսով, առանց մորուքի ու բեղերի: Վեղարաձև այս գլխարկն իր ականջակալների ու վզկալի ամբողջականությամբ բնորոշ է աքեմենյան տիրապետության ժամանակներում սատրապների կրած գլխարկներին:*

*Այդպիսի արքայական գլխարկներ կրել են աքեմենյան փոխարքաներ Երվանդը (Օրոնտաս)*[2] *և Տիրիբազը՝ դատելով նրանց դրամներից*[3]*: Վեղարաձև նման գլխարկներով դրամների վրա պատկերված են նաև մ. թ. ա. III դարի վերջերին*[4] *Պարսքի (Պերսիս), ինչպես նաև ավելի ուշ մ. թ. ա. I դարի պոնտական թագավորները: Սակայն գանձում տեղ գտած պարթևական մյուս դրամներն իրենց արքայական դիմանկարներով և խորագրերով որոշակիորեն տարբերվում են վաղ պարթևական շրջանի դրամներից:*

---

[1] *Հայաստանի պատմության պետական թանգարանի դրամագիտական ֆոնդի № № 17593, 11363, 17645, 12481, 16387, 17620:*

[2] MN, 53, № 34, № 35; *Зограф*, табл. X, № 10.

[3] *Jean Babelon*, Les monnaies recontent l'histoire, Fayard, 1963, p. 35.

[4] MN. 227, № 340.

*Միհրդատ II-ը (123—88) ներկայացված է երկար մորուքով և ընչացքով, գլխին կրում է արքայական վարսակալ ժապավեն, իսկ ականջին՝ օղ։ Ընդհանրապես պարթևական այս դրամների վրա դիմանկարները կատարված են ռեալիստական ոճով և տարբերվում են միմյանցից միապետների անհատականություններին բնորոշ դիմագծերով։ Սանատրուկ Պարթև արքան եթե առաջին իսկ հայացքից տեսքով նման է Միհրդատ II-ին, ապա իր կրած թագի ձևով տարբերվում է նախորդներից ու հաջորդներից (համեմատի՛ր դրամներ №№ 100—104)։ Գոտարզ I-ի իշխանության տարիներին (90—80) թողարկված դրամները միապետի դիմանկարի կերպավորման ընդհանուր տեսքով նման են Օրոդես II (57—38) Պարթև արքայի դրամներին (№№ 107—120), սակայն անձնական դիմագծերով խիստ տարբերվում են միմյանցից։ Հարկ է նկատել, որ գանձի պարթևական դրախմաների արքայական դիմանկարները չեն կրկնվում։ Դրանք բոլորն էլ տարբեր կնիքներից ելած օրինակներ են, որոնք եղել են փորագրիչ վարպետների ստեղծագործական աշխատանքի տարբեր կատարումները։*

*Ըստ դիմանկարների, գանձի դրամների մեջ պարթև արքաներից ամենաերիտասարդը ներկայացված է Միհրդատ III (57—54) Արշակունին։ Պարթևական դրամների ձևավորման մեջ մեծ տեղ է հատկացված նաև խորագրերին։ Դրանք բարոյա-քաղաքական տիտղոսներ են, նվիրված Արշակունի արքաների փառաբանությանը։ Հունատառ այդ խորագրերը տարբեր միապետների դրամների վրա տարբեր ձևերով են հիշատակված.*

| | | |
|---|---|---|
| *Միհրդատ* I *(171—138)* | ΒΑΣΙΛΕΩΣ ΑΡΣΑΚΟΥ | *տե՛ս դրամ № 99* |
| *Միհրդատ* II *(123—88)* | ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ ΜΕΓΑΛΟΥ ΑΡΣΑΚΟΥ ΕΠΙΦΑΝΟΥΣ | *» » 100* |
| *Գոտարզ* I *(90—80)* | ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΑΡΣΑΚΟΥ ΘΕΟΠΑΤΟΡΟΣ ΕΥΕΡΓΕΤΟΥ | *» » 102* |
| *Սանատրուկ (77—70)* | ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΑΡΣΑΚΟΥ ΘΕΟΠΑΤΡΟΥ ΝΙΚΑΤΟΡΟΣ | *» » 103* |
| *Միհրդատ* III *(57—54)* | ΒΑΣΙΛΕΩΣ ΜΕΓΑΛΟΥ ΑΡΣΑΚΟΥ ΔΙΚΑΙΟΥ ΕΠΙΦΑΝΟΥΣ ΘΕΟΥ ΕΥΠΑΤΟΡΟΣ ΚΑΙ ‖ ΦΙΛΕΛΛΗΝΟΣ | *» 104* |
| *Օրոդես* II *(57—38)* | ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ ΑΡΣΑΚΟΥ ΕΥΕΡΓΕΤΟΥ ΔΙΚΑΙΟΥ ΕΠΙΦΑΝΟΥΣ ΦΙΛΕΛΛΗΝΟΣ | *» » 120* |

[1] *Зограф*, XIV, № 16.

*Ընդհանուր առմամբ գանձից մեզ են հասել պարթևական այնպիսի դրամներ, որոնց պատկերատիպը ինչպես միապետների դիմանկարների, այնպես էլ երկրորդ կողմի ձևավորման մանրամասնությունների կատարման ոճի տեսակետից վկայում են հելլենիստական արվեստի ազդեցությունը։*

*Հայկական դրամներն ըստ պատկերատիպի բաժանվում են երկու խմբի։ Դրանք հայոց թագավորներ Տիգրան Մեծի (95—56) և նրա հաջորդ Արտավազդ II-ի (56—34) իշխանության տարիներին թողարկված դրամներն են, որոնք իրենց պատկերատիպով լայնորեն տարածված և գրականության մեջ վաղուց հայտնի օրինակներ են։ Տիգրան Մեծի դրամներն իրենց հերթին, պատկերատիպի մանրամասնություններով բաժանվում են երկու առանձին ենթախմբի.*

*1. Դրամներ, թողարկված Սիրիայում՝* ΒΑΣΙΛΕΩΣ ΤΙΓΡΑΝΟΥ ***արձանագրությամբ (№№ 121—122)։***

*2. Դրամներ, թողարկված Հայաստանում՝* ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ ΤΙΓΡΑΝΟΥ ***արձանագրությամբ (№№ 123—128)։***

*Առաջին ենթախմբի դրամները՝ հայոց միապետի դիմանկարով, արքայական զարդաձևերով, որոշակիորեն տարբերվում են երկրորդ ենթախմբի դրամներից։ Սիրիայում թողարկված Տիգրան Մեծի դրամների վրա արքայի դիմանկարը ներկայացված է առավել խոշոր, այն գրեթե ամբողջությամբ ընդգրկել է դրամի մակերեսը։ Հայոց արքայական խույրը վերևից ավարտված է իրար վրա նստած զույգ գնդերով, որոնցից ներքևինները մեծ են, իսկ վերևինները՝ համեմատաբար փոքր։*

*Միասին վերցրած այդ զույգ գնդաձև հինգ զարդերը արտահայտում են աստիճանաբար դեպի վեր ձգվող գիծ։ Տարաբախտաբար այս գանձից ծագած նմուշների վրա հիշյալ գնդաձև զարդերը չեն պահպանվել, սակայն դրանք հայտնի են Տիգրան Մեծի՝ Անտիոքում թողարկված դրամների այլ օրինակներից, որոնցից մի քանիսը պահվում են Հայաստանի պատմության թանգարանում[1]։ Բացի դրանցից, Տիգրանի անտիոքյան տետրադրախմաներն ինչպես արքայական դիմանկարների, այնպես էլ քաղաքամայր աստվածուհու արձանի և վերջինիս ոտքերի տակ հոսող գետի անձնավորման պատկերների նման կապվում են եթե ոչ մի վարպետ փորագրչի, ապա ուրեմն քանդակագործական մի որոշակի դպրոցի ստեղծագործության հետ[2]։ Որ Տիգրան Մեծի հիշյալ երկու տետրադրախմաները դրվագվել են երկու զույգ տարբեր կնիքներով, երևում է ոչ միայն նրանց վրա եղած տարբեր մենագրերից (տե՛ս դրամ № 121, մենագիր № 64, 65 և դրամ № 122, մենագիր № 66), այլև արքայական զարդերի համեմատությունից (№ 121 դրամի վրա խույրի ականջակալներն ավելի երկար են և արծիվների պատկերներն առավել խոշոր են ներկայացված, քան № 122 դրամի վրա)։*

*Տիգրանյան դրամների մյուս ենթախումբը (№ № 123—128) բնորոշվում է հետևյալ հատկանիշներով.*

*ա. Դրամների վրա երեք որոշակի տեղերում՝ քաղաքամայր դիցուհու դեմքի առաջ, ջրի աստվածության գլխավերևում և նրա ոտքերի տակ նշված են երեք մենագրեր։*

---

[1] *Հայաստանի պատմության պետական թանգարանի դրամագիտական բաժին, № 17619,* **8920։**

[2] *Head*, 754.

բ. Ունեն ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ ΤΙΓΡΑΝΟΥ արձանագրությունը:

գ. Հայոց արքայական խույրի գագաթն ավարտված է դեպի վեր խոյացող, սղոցի ատամների նման սրածայր հինգ ելուստներով, պատկերված իրարից համաչափ հեռավորության վրա:

Այս կարգի դրամների վրա Տիգրանը պատկերված է մինչև կուրծքը արքայական զարդարանքների առավել մանրամասն արտացոլմամբ: Դրանք թողարկվել են Հայաստանում, հավանաբար նրա գլխավոր քաղաքներ Տիգրանակերտում և Արտաշատում[1]: Հարկ է նկատել, որ ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ տիտղոսով Տիգրան Մեծի դրամների շարքում կա միայն մի տետրադրախմա, մնացածները դրախմաներ են (№ № 123—127): Ընդհանրապես Տիգրան Մեծի հիշյալ տիտղոսով տետրադրախմաները հազվագյուտ են ի տարբերություն դրախմաների, որոնք ավելի շատ են մեզ հասել: Ուշագրավ է, որ վերոհիշյալ տետրադրախմայի վրա (№ 128) հայկական խույրի ճակատային մասում պատկերված խորհրդանշանները՝ արևը երկու արծիվների միջև, վերցված է բուսական թելերից հյուսված քառանկյուն շրջանակի մեջ, մի զարդաձև, որ անսովոր է Տիգրան Մեծի դրամների համար: Արքայական դիմանկարի գեղարվեստական արժեքով ու մենագրերի տվյալներով այդ տետրադրախման բացառիկ տեղ է գրավում հայկական դրամների շարքում: Տիգրան Մեծի բոլոր չորեքդրամյանների վրա պատկերները վերցված են երիզափակ շրջանակների մեջ՝ արքայի դիմանկարի շուրջ մեկական գոտու հատիկներից և զույգ գնդաձև ուլունքներից շարված, իսկ հակառակ կողմերում դափնե տերևներից կամ հացահատիկային ցողունի հասկերից շարված: Ի տարբերություն տետրադրախմաների՝ դրախմաների վրա երիզափակ շրջանակները նշված են միայն արքայի դիմանկարի շուրջ, բաղկացած մարգարտաշարից՝ կետավոր հատիկներից: Դրախմաների երկրորդ կողմերը մի փոքր գոգավոր են՝ իբրև արդյունք ժամանակի դրվագման տեխնիկայի:

Տիգրան Մեծի՝ Հայաստանում թողարկված ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ տիտղոսով դրամների կլորակները համեմատաբար բարակ են, իսկ դրոշմած պատկերները՝ բարձրաքանդակ և այդ առումով դրանք առնչվում են Պարթևական Իրանի և Հանրապետական Հռոմի դրամների հետ: Մինչդեռ Սիրիայում դրվագված դրամների (№ № 121, 122) կլորակները հաստ են և դրոշմված պատկերներն էլ բարձրությամբ ցածր՝ հար ու նման վերջին սելևկյաններից, մասնավորապես Փիլիպոս I Ֆիլադելփոսի (93—83) դրամներին:

Գանձում եղած Տիգրան Մեծի դրամները բոլորն էլ դրվագված լինելով տարբեր կնիքներով, պատկերների կատարման ոճով էլ քանդակագործական տարբեր ստեղծագործությունների արդյունք են: Այսպես, եթե № 121 և № 122 դրամներն Անտիոքի քանդակագործ-փորագրչական դպրոցի հետ են կապվում, իսկ բուն Հայաստանի փողերանոցներում դրվագված դրամները (№ № 123—128) Տիգրանի դիմանկարի և արքայական զարդերի արտահայտման տեսակետից տարբեր վարպետների աշխատանքի արգասիք են: Այս հարցը ենթակա է հատուկ քննության, որը սակայն դուրս է մեր ուսումնասիրության նպատակից, ուստի մասնագետների ուշադրությանն ենք ներկայացնում հետևյալ պայմանական ստորաբաժանումները՝ կնիքների կերտվածքով.

[1] Seyrig, 114—117, Պատկեան, 44:

Կնիքներ Ա №№ 121—122 դրամների համար
» Բ » 124—125 » »
» Գ » 126—127 » »
» Դ » 123 և 128 » »

Կնիքների վերջին երկու խմբերը պատկերատիպի ռեալիստական ոճով թեև մոտ են միմյանց, բայց ունեն յուրահատուկ գծեր։ Ինչ վերաբերում է Տիգրան Մեծի դրամների հակառակ կողմերի պատկերատիպի ընդհանուր իմաստին, ապա այն հիմնականում պաշտամունքային է, նվիրված պետության պաշտպան ու հովանավորող աստվածամորը, որի պղնձաձույլ արձանը դեռևս Սելևկոս I Նիկատորի օրոք, սելևկյանների նոր մայրաքաղաք Անտիոքի հիմնադրման առթիվ կանգնեցվել էր Որոնտես գետի ափին՝ Սիլպիոն լեռան վրա։ Ըստ ավանդության այդ արձանը կերտել էր նշանավոր քանդակագործ Լիսիպպոսի աշակերտ Եվթիկիդես Սիկիոնացին։ Դրամի վրա աստվածուհին պատկերված է հուշարձանի ընդօրինակությամբ՝ աշտարակաձև թագը գլխին, իրանը քողարկված նուրբ պատմուճանի տակ, նստած է Սիլպիոն լեռը խորհրդանշող ժայռաքարերի վրա, որոնց կռթնել է ձախ ձեռքով, իսկ աջով բռնել է արմավենու մի ճյուղ։ Դրամին դրոշմված պատկերը տարբերվում է հուշարձանից, որովհետև այստեղ աստվածուհին ոչ թե արմավենու ճյուղ, այլ ցորենի հասկ է բռնել՝ ի նշան հողային արգասաբերության։ Հելլենիստական դրամների վրա հաճախ էին դրոշմվում պատկերներ, ընդօրինակված ինչպես քանդակագործական, այնպես էլ ճարտարապետական նշանավոր հուշարձաններից[1]։ Տիգրանի դրամների վրա քաղաքամայր արձանը ներկայացված է միայն մի կողմից (կիսադեմ), որ բնորոշ է դրամագործության մեջ ընդունված ժամանակի պատկերների վերարտադրմանը։ Ընդգծելու համար կապը քաղաքի հետ, փորագրիչ-քանդակագործը պատկերել է նաև ջրի աստվածությունը մարդկային կերպարանքով, որը լողալով դուրս է գալիս դիցուհու ոտքերի տակից։

№№ 121—123, 126—128 դրամների վրա ջրի աստվածության կերպարանքը մարմնի վերնամասում արտահայտված է ցցուն ստինքներով, ընդ որում դեմքը միշտ ներկայացված է հանդիպահայաց։ Ուշագրավ է, որ ΒΑΣΙΛΕΩΣ ΤΙΓΡΑΝΟΥ խորագրով դրամների վրա ջրի աստվածության առաջ պարզած աջ ձեռքն անցնում է ΒΑΣΙΛΕΩΣ բառի վերջին երկու տառերի միջով, իսկ ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ խորագրով դրամների վրա ΒΑΣΙΛΕΩΣ բառի վերջին երկու տառերից առաջ՝ դեպի երիզապսակը, որի մեջ ամփոփված է ողջ պատկերատիպը։

Ջրի աստվածության անձնավորումն ունի պաշտամունքային իմաստ։ Հեթանոսական ըմբռնումով ջուրն ուներ բուժիչ և ոգեշնչող ուժ, նպաստում էր հողի պտղաբերությանը։ Նրա աստվածությանը վերագրում էին գուշակության ընդունակություն։ Անտիոք քաղաքի աստվածուհու արձանը՝ բրգաձև թագով, հանդիսացել է նախատիպ բոլոր քաղաքամայր դիցուհիների պատկերացման համար դրամների վրա։

Հայկական դրամների հաջորդ և վերջին խումբն Արտավազդ II-ի (56—34) դրախմաներն են, ընդամենը երկու օրինակ (№ № 129, 130), որոնք իրենց

[1] *Зограф*, XVIII, № 10, 12, 14.

պատկերատիպով ոչ միայն նույնանման են, այլ նրանց վրա հայոց միապետի կիսանդրին դրոշմված է հավանաբար նույն կնիքով։ Նախապես նշենք, որ այդ դրամներից մեկը (№ 129) պահպանված է ավելի լավ, իր կլորակ-հատածույլի կանոնավոր տրամագծային չափով, մինչդեռ մյուսը եզերքներից տաշված է, թեև կշիռների մեջ էական տարբերություններ գրեթե չկան (4,02 և 4,05 գրամ)։ Արտավազդ II-ի այս դրամները պատկերատիպի, մանավորապես արքայական դիմանկարների կատարելությամբ հելլենիստական հայ արվեստի լավագույն ստեղծագործությունների շարքին են դասվում։ Արտավազդը պատկերված է մինչև կուրծքը, հայկական խույրը գլխին, ըստ որում այն վերևից ավարտված է ժանիքաձև հինգ ելուստներով, ճիշտ այնպես, ինչպես Տիգրան Մեծի ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ տիտղոսով դրամների վրա։ Արտավազդի դիմանկարի կերտվածքը պահպանելով Տիգրան Մեծի օրոք ընդունված կանոնիկ ձևերը՝ կիսադեմ, հայացքով դեպի աջ, միաժամանակ լրացուցիչ տվյալներ է ներկայացնում։

Ի տարբերություն Տիգրան Մեծի, Արտավազդ II-ի դրամների վրա հայկական խույրիականջակալները ծալված են և ամրացված ճակատային մասին, որով տեսանելի է դարձել հայոց արքայի դեմքը առավել լրիվ, քան նրա հոր դրամների վրա։ Ակնառու է, որ հայոց արքան իր ականջը զարդարել է օղով, իսկ պարանոցը երեք շարք մանյակներով՝ արքայական զարդարանքներ, որոնք լրիվ չէին դիտվում Տիգրան Մեծի դրամների վրա, որովհետև արքայի դեմքը ծածկված էր մինչև ուսերը հասնող լայն ականջակալներով։ Զարդերի ու հանդերձի մյուս մանրամասնությունները նույնությամբ կրկնում են այն ձևերը՝ արևը երկու արծիվների միջև, արքայական ապարոշը, ծիրանին հանգուցված աջ ուսին և այլն, որոնք հայտնի էին Տիգրան Մեծի դրամներից։ Արտավազդի դիմագծերը այս դրամների վրա իդեալականացված են այնպիսի նրբագեղությամբ, ինչպես հելլենիստական արվեստում ներկայացվում էր Ապոլլոնը։ Հեթանոս հայերի մոտ Արեգ-Ապոլլոն-Տիր աստծո պաշտամունքն անցյալից եկող խոր արմատներ ուներ և Արտաշեսյանների օրոք պետական երկրպագության բնույթ էր ստացել։ Ապոլլոնյան դիմագծերով դրամի վրա պատկերված Արտավազդ II-ը, բացի միապետ լինելուց, ջատագով էր արվեստի ու գրականության։

Արտավազդի դրամների վրա արևի պաշտամունքի գաղափարն արտացոլված է ինչպես արքայական խույրի ճակատային հատվածում՝ երկու արծիվների ու նրանց միջև արեգակի նշանով, որը, ինչպես տեսանք, հանդիպում է նաև Տիգրանի դրամների վրա, այնպես էլ դրախմայի երկրորդ երեսին արշավող քառաձի մարտակառքի պատկերումով։ Անտիկ դիցաբանության մեջ արևի աստվածությունը պատկերացվում էր ոսկեկուռ քառաձի կառքով[1]։ Դրամի վրա քառաձի մարտակառքը վարում է մարդկային մի կերպարանք, որին ձիերի սանձի բարձրությունից պսակ է կարկառում հաղթանակի թևավոր աստվածուհին։ Այդ դրախմաներից մեկի վրա (№ 129) մարտակառքը վարող մարդկային կերպարանքը իր գլխին կրում է ճառագայթաձև պսակ, սխեմատիկ ձևով նմանված հայկական խույրին, վերևում ուրվագծվող սրածայր գծերով և մի փոքր դեպի հետ ձգված վզկալով ու ականջակալներով (№ 130)։ Արշա-

[1] *Фр. Любкер*, Реальный словарь классической древности, СПб., 1888, էջ 463։

վող քառաձի մարտակառքի պատկերով արծաթ դրամներ Հայաստանում թողարկվել են միայն Արտավազդ II-ի իշխանության տարիներին[1]։

Բացառված չէ նաև այն, որ մարտակառքը վարողը Արտավազդի անձնավորումն է արևի աստվածության կերպարով։ Այդպիսով, պատկերատիպի ողջ կոմպոզիցիան որոշակիորեն աղերսվում է արևի աստվածության պաշտամունքին։ Հարկ է նկատել, որ քառաձի մարտակառքի պատկերումով Հռոմեական հանրապետության արծաթյա դրամներ առավել հաճախ թողարկվել են դեռևս III—I դարերում։

Սակայն հռոմեական դրամների վրա կառքը վարող ճարպկոյին կերպարանքները ներկայացված են մերթ Յուպիտերի[2], մերթ Վիկտորիայի[3] և կամ Մինևրվայի[4] խորհրդանշաններով։

Արտավազդ II-ի արծաթյա այս դրամների[5] վրա արձանագրությունները բաշխված են միշտ նույն տեղերում, օգտագործելով կլորակ-հատածույլի փոքրիկ մակերեսի սուղ հնարավորությունները, մարտակառքի վերևում՝ ΒΑΣΙ, ΛΕΩΣ և այնուհետև նրա տակ երկու տողով՝ ΒΑΣΙΛΕΩΝ ΑΡΤΑVΑΖΔΟΥ.

Ուշագրավ է նաև մարտակառքի դիմաց նշված մենագիրը, արտահայտված թեև տարբեր կատարմամբ, բայց հիմնականում մի ձևով (տե՛ս Մենագիր № 67)։ ‡ (Այդ մենագրի գրաֆիկ կառուցվածքը կարելի է բացահայտել տարբեր տեսանկյուններից, որոնցից մեկը կարող է լինել Ρ և Ξ գրերի զուգորդությունն այն ձևավորմամբ, երբ ռո գիրը ուղղահայաց անցնում է վերևից վար քսի գրի միջով)։

Մենագրի այդ ձևը հստակորեն պահպանված է երկու օրինակների վրա էլ։ Այն հայտնի է նաև մինչև օրս մեզ հասած Արտավազդ II-ի արծաթյա այլ դրամներից, որոնք պահվում են դրամագիտական տարբեր ժողովածուներում[6]։

Հայկական անտիկ դրամների պատկերատիպի ընդհանուր ձևավորման մեջ մենագրերը մտնում են իբրև լրացուցիչ տարրեր։ Նրանց ճշգրիտ իմաստը դեռևս վերջնականապես պարզված չէ։ Հելլենիստական աշխարհի դրամների համար մենագրերը հաճախ կարող են փողերանոցի անվան կրճատ գրությունը լինել։ Այդ առումով թերևս հնարավոր է, որ Արտավազդ II-ի այս դրամները դրվագվել են Հայաստանի մայրաքաղաք Արտաշատում, որի հունատառ ΑΡΤΑΞΑΤΑ անվան ռո, տավ և քսի ΡΤΞ տառերը ամփոփված են ‡ մենագրի մեջ։ Արտավազդ II-ի այս դրամների վրա, մարտակառքի վերևում, թևավոր Հաղթանակի թիկունքում նշված է հունարեն ⁝ գիրը։

---

[1] Արտավազդ II-ի նույնանման պատկերատիպի դրամներ հայտնի են նաև Վենետիկի, Վիեննայի Մխիթարյան թանգարանների, Փարիզի ազգային մատենադարանի, Բրիտանական թանգարանի, Պետական էրմիտաժի և այլ դրամագիտական ժողովածուներից։

[2] *Sydenham*, №№ 64—67, pl. 13.

[3] Նույնը, № 464, pl. 18, № 748, pl. 21, №№ 985, 994, pl. 26.

[4] Նույնը, № 684, pl. 20, № 723, pl. 21.

[5] Պետական գործչի պատկերումը, արշավող մարտակառքի վրա Հռոմի հանրապետական դրամների համար բնորոշ չէ, բացառություն են կազմել մ. թ. ա. 85 թ. թողարկված Հռոմեական հանրապետության այն դրամները, որոնց վրա մի կողմում պատկերված է Ռոմա աստվածուհին, իսկ մյուս կողմում՝ քառաձի մարտակառքին կանգնած Լ. Կոռնելիուս Սուլլան, բայց որում վերջինիս մարտակառքը ներկայացված է ոչ թե վազքի ընթացքում, ինչպես Արտավազդ II-ի դրամների վրա ենք տեսնում, այլ հանդարտ քայլվածքի ժամանակ, տե՛ս. *Sydenham*, № 75.

[6] BMC, 101, pl. XIV, № 2; ОНЭ, № 19417.

Թվականի իմաստով այն ցույց է տալիս, որ դրամը թողարկվել է Արտավազդի թագավորության վեցերորդ տարում, այսինքն մ. թ. ա. 50—49 թվականներին։ Պատմական տեղեկությունների համաձայն, 51—50 թվականների ձմռանը հայ-պարթևական դաշնակից զորքերը տիրել էին Հյուսիսային Միջագետքին և մոտեցել Կիլիկիայի սահմաններին։

Արտավազդ II-ը համախմբել էր հայկական ուժերը և սերտ հարաբերությունների մեջ էր Գալատիայի թագավորի հետ, վերջինիս թագաժառանգին պսակելով իր դստեր հետ։ Մի տարի անց՝ մ. թ. ա. 49 թվականին հայոց թագավորությունը օգնական զորքեր է ուղարկում Հռոմում ծագած քաղաքացիական կռիվներին մասնակցելու՝ ի պաշտպանություն Հայաստանի շահերի համար ձեռնտու Պոմպեոսի թեկնածության՝ ընդդեմ Հուլիոս Կեսարի[1]։

Հավանական է, որ Արտավազդ II-ի այս շքեղ դրախմաները թողարկվել են Հայաստանի համար բարեհաջող այդ տարիներին։ Տարեթվի նույն նշումով (;), սակայն գրելաձևի այլ կատարմամբ Արտավազդ II-ի արծաթյա դրամներից մի օրինակ ներկայումս պահվում է Զ. Պտուկյանի ժողովածուում, հին հայկական դրամների շարքում (Նյու-Յորք)։

Ինչ վերաբերում է Արտավազդ II-ի այս դրախմաների վրա նշված երիզափակ շրջանակների ձևերին, ապա բնորոշն այն է, որ հայոց արքայի դիմանկարը վերցված է երկարավուն հատիկային ուլունքներից բաղկացած պսակի մեջ, ըստ որում ընդհանուր շղթայում դրանցից յուրաքանչյուրն ընդհատված է զույգ փոքրիկ գնդաձև ուլունքներով, ճիշտ այնպես, ինչպես Տիգրան Մեծի տետրադրախմաների երիզափակ շրջանակներն են։ Ձևավորման այս տարրերից նկատվում է, որ Արտավազդի օրոք Հայաստանի փողերանոցում քանդակագործ վարպետները հայոց դրամների վրա շարունակում էին պահպանել Տիգրան Մեծի օրոք ընդունված այդ զարդաձևը։ Սակայն հայկական դրամների թողարկումից շատ առաջ երիզափակ այդ զարդաձևը տարածված էր հելլենիստական աշխարհի ինչպես արևելյան, այնպես էլ արևմտյան երկրներում։ Արևելքում այն դիտվում է Սելևկյանների[2] և մասամբ պարթևական տետրադրախմաների ու դրախմաների վրա[3]։

Սակավաթիվ չափով նման զարդաձևով դրամներ դրվագված են նաև մ. թ. ա. II դարում հարավային Միջագետքում[4], Էլամում[5] և Բակտրիայում[6]։ Հելլենիստական աշխարհի արևմուտքում այդ զարդաձևը դրամների վրա արտացոլված է հանրապետական Հռոմի դենարների վրա, թողարկված մ. թ. ա. 68—66 թվականներին, որոնցից երկու օրինակ անցել է մեր այս գանձի մեջ (տե՛ս № № 205—206), ինչպես նաև Գնեոս (Կոռնելիոս) Լենտուլոս Մար-

---

[1] Հ. Մանանդյան, *Քննական տեսություն Հայ ժողովրդի պատմության*, հատոր Ա, Երևան, 1944, էջ 255։

[2] *Gardner*, pl., VIII №№ 1, 7; pl. IX, № 1; pl. XI, №№ 2, 3, 7--9; pl XIII, №№ 12, 13; pl. XIV, №№ 1, 3; pl. XVII, №№ 8, 9; pl. XIX, № 2, pl. XX, № 6: pl. XXI, №№ 3, 6; pl. XXII, № 2, pl. XXIII, №№ 1, 3, 8 pl. XXIV, №№ 1--3; pl. XXV, №№ 1, 12; pl. XXV, №№ 1, 3,9.

[3] *Wroth*, pl, III, №№ 7—12; pl. V, №№ 1,2; 9,10; *Morgan*, 154, № 151.

[4] MN, 214.

[5] *Նույնը*, 201։

[6] *Նույնը*, 357։

ցելլինոսի[1], Լ. Պապիուսի[2], Լ. Ֆարսուլեյուս Մենսորի[3] և այլ հռոմեական մ. թ. ա. I դարի դրամների վրա։ Հետևապես Արտավազդ II-ի արծաթ դրամների վրա նշված երիզափակ շրջանակի զարդաձևը ունեցել է իր նախատիպը ինչպես Տիգրան Մեծի դրամների, այնպես էլ Հայաստանի հետ առևտրական-դրամական հարաբերություններով առնչված երկրների դրամների վրա։

Կապադովկիական դրամները ունեն պատկերների ձևավորման միօրինակություն։ Դրանք դրախմաներ են՝ թողարկված Արիարաթ IV (220—163), Արիարաթ V (163—130) և Արիոբարզան I (95—62) թագավորների իշխանության տարիներին։ Առաջին երեսների վրա պատկերված են հիշյալ միապետների դիմանկարները՝ դեմքով դեպի աջ, բաց որում առանց երիզափակ շրջանակների։ Երկրորդ կողմերի վրա կենտրոնական տեղը հատկացված է Աթենաս աստվածուհուն, ներկայացված ամբողջ հասակով ռազմի պարագաների իր խորհրդանշաններով՝ գլխին սաղավարտ, ձախ ձեռքում նիզակ ու վահան, աջում՝ Հաղթանակի արձանիկը։ Արքայական անունների և տիտղոսների հունատառ խորագրերը, ինչպես նաև մենագրերն ու տարեթվերը նշված են միշտ նույն սխեմայով, այն է՝ Աթենասի թիկունքում՝ ΒΑΣΙΛΕΩΣ, առջևում՝ միապետի անունը, ոտքերի տակ՝ տիտղոսը։ Շուրջ 130 տարվա տարբերությամբ թողարկված այս դրամների մեջ պատկերատիպի փոփոխություններ չեն նկատվում։ Ուշագրավ է, որ Հայաստանի մերձավորագույն հարևան Կապադովկիայի դրամների արքայական դիմանկարները զերծ են իդեալականացումից և արտահայտված են ռեալիստական ոճով։ Այդ տեսակետից բնորոշ են Արիոբարզան I-ի դրամների վրա պահպանված պատկերները (տե՛ս դրամներ №№ 135—139)։ Արիոբարզանը ներկայացված է տարեց մարդու գլխով, մազզուրկ դեմքով, խոշոր աչքերով և կնճռոտված ճակատով։ Այդ դեմքն այնքան տիպական է և պատկերավոր, որ մնում է դիտողի հիշողության մեջ։ Գեղարվեստական տեսակետից այս կարգի դրամները Կապադովկիայի արվեստի պատմության հելլենիստական դարաշրջանի լավագույն հուշարձանների թվին կարող են դասվել։ Մյուս կողմից, Աթենասի անձնավորումով պատկերված դրամների մասսայական թողարկումը Կապադովկիայում, մ. թ. ա. III—II դարերում, ակնբախ է դարձնում պաշտամունքային այն դերը, որ ունեցել է ամենակարող Զևսի ամենակարող դուստրն այդ երկրում, հանդիսանալով Կապադովկիայի թագավորության հովանավորողն ու նրա շահերի պաշտպանը։ Ընդհանուր առմամբ կապադովկիական դրամների պատկերատիպը առավել մոտ է սելևկյան խմբի դրամների պատկերներին, ինչպես նրանց թեմատիկայի, այնպես էլ ձևավորման տեսակետից։ Տարբերվում է Արիարաթ V (163—130) Ֆիլոպատորի դրախման (№ 133), որի վրա միապետը ներկայացված է ճոխ վարսերով։

Դիմանկարային նման առանձնահատկություններով դրամներ Կապադովկիայում թողարկվել են հետագայում ևս, մասնավորապես Արիարաթ IX-ի (99—87) իշխանության տարիներին։ Արքայական այդ դիմանկարն իր ձևով նման է Միհրդատ VI Պոնտացու դիմանկարին։ Տվյալ ընդօրինակությունը թերևս մի արդյունք է այն ազդեցության, որ ուներ Պոնտոսը Կապադովկիայի

---

[1] *Sydenham*, pl. 21, № 753.

[2] *Նույնը*, pl. 22, № 773.

[3] *Նույնը*, pl. 22, № 789 A.

վրա Միհրդատ Եվպատորի իշխանության տարիներին[1]։ Հայտնի է, որ Կապադովկիան այդ ժամանակաշրջանում գտնվում էր Հայաստանին դաշնակից Պոնտոսի քաղաքական գերիշխանության ներքո[2]։

Պոնտական դրամների պատկերատիպի մասին կարելի է դատել գանձում եղած, ցավոք, միայն մեկ հատ, բայց շատ լավ պահպանված տետրադրախմայի հիման վրա, թողարկված մ. թ. ա. 71 թվականին։ Դրամի առաջին երեսին պատկերված է Պոնտոսի նշանավոր արքա՝ Միհրդատ VI Եվպատորի գլուխը՝ ճոխ վարսերով։ Դիմանկարի իդեալականացված արտահայտությամբ թողարկված այդ տետրադրախման իր տրամագծով շքադրամի տպավորություն է թողնում։ Յուրօրինակ է նաև այս տետրադրախմայի հակառակ կողմի պատկերատիպը։ Նախ և առաջ կենտրոնական տեղում ներկայացված է թագավորի խորհրդանշանը, սակայն ոչ որպես թևավոր ձի, ինչպես հայտնի է նրա մյուս տետրադրախմաներից[3], այլ որպես եղջերու՝ ջուր խմելու պահին[4]։ Աթենքում, մ. թ. ա. 88 թվականին, Միհրդատ VI Պոնտացու շահերի պաշտպան Արիստիոնը, լինելով փողերանոցի կառավարիչ, դրամների վրա դրոշմում էր նաև ջուր խմող թևավոր ձիու պատկերը[5], որը հետագայում ամբողջությամբ փոխանցվում է Միհրդատ VI Պոնտացու դրամների վրա։ Սակայն այս տետրադրախման՝ թևավոր եղջերուի խորհրդանշանով, Հայաստանում առաջին անգամ է հանդիպում։

Աթենական տետրադրախմաների պատկերատիպից[6] մ. թ. ա. 87 թվականին Միհրդատ VI Պոնտացու դրամների վրա է անցել նաև կիսալուսինը աստղով, որը նույնպես շատ հստակ պահպանված է մեր տետրադրախմայի վրա։

Կիսալուսինը և աստղը հետագայում հանդիսացան ժառանգական խորհրդանշան Բոսֆորի թագավորության առանձին ներկայացուցիչների համար, որոնց դրամների վրա այն պատկերվում էր առավել ընդգծված ձևով[7]։

Հիշյալ խորհրդանշաններից բացի Միհրդատ Եվպատորի դրամն իր վրա կրում է նրա անվան և տիտղոսի հունատառ խորագիրը՝ ΒΑΣΙΛΕΩΣ ΜΙΘΡΙΔΑΤΟΥ ΕΓΠΑΤΟΡΟΣ, ինչպես նաև տետրադրախմայի թողարկման տարեթիվը՝ CKΣ (= 226 բոսֆորյան տոմարով հաշված = մ. թ. ա. 71 թիվ) և փակագիրը։ Ի վերջո երկրորդ կողմի պատկերատիպն ավարտվում է A գրի հիշատակումով հունատառ արձանագրության վերջին տողի տակ և այդ ամենը վերցված ծաղիկներից ու պտուղներից հյուսված մի պսակի մեջ։ Վերջինս իբրև երիզափակ զարդաձև մենք տեսնում ենք նաև Պերգամոնի և Եփեսոսի կիստոֆորների վրա (տե՛ս դրամներ № № 140—147)։ Պոնտոսի և փոքրասիական հիշյալ քաղաքների կիստոֆորների պատկերատիպում նշմարվող այդ ընդհանուր զարդաձևը պատահականության արդյունք չէ, այլ թերևս մի արտացոլում նրանց միջև եղած առնչությունների։

Փոքրասիական քաղաքային դրամներ՝ կիստոֆորները արծաթյա խոշոր դրամներ են 11,5—12$^3/_4$ գրամ քաշով, որոնք շրջանառության մեջ համազոր

---

1 *Տե՛ս նաև* BMC, pl. VII, №№ 1—4 (Coins of Cappadocia).

2 **Հ. Մանանդյան**, *I, նշ. աշխ., էջ 142—145։*

3 *Зограф*, XV, № 5.

4 *Head*, 501:

5 *Head*, 385;

6 *Նույնը*, fig 217.

7 *Зограф*, табл. XLIV, № 14, 29, XLVI, № 4.

էին 3 ատտիկյան դրախմայի կամ 3 հռոմեական դենարի։ Cista նշանակում է տուփ, արկղ կամ խորհրդավոր կողով, որի մեջ սովորաբար պահում էին թանկարժեք հարստություն, ոսկի կամ զարդարանքներ, զոհաբերության առարկաներ, գաղտնի գործածության իրեր և կամ առանձին դեպքերում օգտագործում էին քվեարկության հետ կապված արարողությունների ժամանակ։ Մ. թ. ա. II—I դարերում փոքրասիական քաղաքներում, մասնավորապես Պերգամոնում, Էփեսոսում, Ապոլլոնիոսում, Ապամեայում և այլուր թողարկվում էին այդպիսի խոշոր արծաթյա դրամներ՝ հիշյալ խորհրդավոր կողովի պատկերով, որոնք կոչվում էին կիստոֆորներ։ Գանձի մեջ եղած կիստոֆորների պատկերատիպը բոլորովին տարբերվում է ինչպես հելլենիստական միապետությունների, այնպես էլ Հռոմեական հանրապետության դրամների պատկերատիպից։ Դրանց առաջին կողմերի վրա, ծաղիկներից ու պտուղներից հյուսված շրջանակի մեջ պատկերված է կիսաբաց կափարիչով մի ոչ բարձր, լայնանիստ, համարյա գլանաձև տուփ (cista), որի միջից դեպի ներքև գալարվելով դուրս է սողում մի օձ։ Այդ դրամների հակառակ կողմերի վրա պատկերված են երկու օձեր, որոնք դեպի վեր են սողում կենտրոնում ծաղկաձև աղեղի և նրա պատյանի երկու կողմերից։

Կիստոֆորներ թողարկող փոքրասիական քաղաքները միավորված էին մի ընդհանուր լիգայի մեջ, որին գլխավորում էր Պերգամոնը։ Մեր այս գանձում հավաքված կիստոֆորները պատկերատիպով միօրինակ են, բայց դրվագված են տարբեր կնիքներով։ Սակայն Պերգամոնի կիստոֆորներից մեկի (№ 145) պատկերատիպը իր մի կողմի տվյալներով նկատելիորեն տարբերվում է այդ խմբի մնացած կիստոֆորներից։ Նրա վրա լատինատառ գրությամբ նշված է հռոմեական պրոկոնսուլ Կ. Կլավդիուս Պուլխերի անունը՝ C. PVLCHER F PRO · COS, որից, բացի հունատառ գրությամբ, հիշատակված է նաև տեղական մագիստրոսի անունը՝ ΜΗΝΟΔΩΡΟC և ի տարբերություն սովորական օրինակների, Պերգամոնի այս կիստոֆորի վրա նշված է միայն մեկ մակագիր (տե՛ս մենագրերի աղյուսակ № 78)։ Էփեսոս քաղաքի կիստոֆորները պահպանելով պատկերատիպի հիմնական տվյալները, որոշ տարբերությամբ են թողարկված։ Նրանց մի կողմերի վրա նշված են առատության զույգ եղջյուրներ, որոնց ուղղել են իրենց գլուխները ներքևից վերև խոյացող զույգ օձեր։ Ուշագրավ է նաև այն, որ Էփեսոսի կիստոֆորների ընդհանուր ձևավորման մեջ իբրև խորհրդանշան ցույց է տրված բոցավառվող ջահ՝ ի տարբերություն Պերգամոնի կիստոֆորների։ Սրանց վրա իբրև խորհրդանշան պատկերված է գնդաձև գլխով մի գավազան, որին փաթաթված է օձ։ Պերգամոնի և Էփեսոսի կիստոֆորները տարբերվում են պատկերատիպի այս լրացուցիչ տարրերով։ Գանձի դրամների ամբողջության մեջ փոքրասիական այդ քաղաքների հիշյալ դրամական միավորները միատիպ պատկերներով խիստ տպավորիչ են Հայաստանում շրջանառության մեջ եղած դրամների շարքում։

## 2. ՀՌՈՄԵԱԿԱՆ ԴՐԱՄՆԵՐ

Գանձի հռոմեական դրամներն ըստ պատկերատիպի բաժանվում են երկու մեծ խմբի. դրամներ, որոնց վրա պատկերված են հեթանոսական տարբեր աստվածություններ և դրամներ, հանրապետության նշանավոր զորավարների ու գործիչների դիմանկարներով, ինչպես նաև ռազմա-քաղաքական ա-

ռանձին խորհրդություններ հիշատակող տեսարանների խորհրդանշանների ու հուշարձանների պատկերներով: Հռոմեական արծաթ դրամները միջազգային շուկայում լայն տարածում ունեին մ. թ. ա. II դարի վերջերին և նրանց պատկերատիպի անցյալում եղած միօրինակությունը, երբ դրամի մի կողմի վրա մշտապես ցույց էր տրվում Ռոմայի գլուխը, իսկ մյուսին՝ հեծյալ երկվորյակներ, համարյա արդեն վերացել էր: Այդ հին պատկերատիպի դրամներից գանձում առկա է միայն մեկ դենար (№ 148): Աստվածուհի Ռոման և առասպելական երկվորյակներ՝ Պոլուկսը ու Կաստորը համարվում էին Հռոմի պետության պաշտպանները, ուստի նրանց պատկերներով հանրապետական դրամների թողարկումը մինչև II դարի սկիզբը կանոնիկ բնույթ ուներ: Հետագայում պատկերների ընտրությունը կախված էր արդեն փողերանոցների կառավարիչների հայեցողությունից, որոնք տուրք էին տալիս իրենց նախնիների փառաբանությանը, կապված հեթանոսական այս կամ այն աստվածությանը և կամ Հռոմի պետությանը նրանց մատուցած ծառայությունների հիշատակության հետ: Գնալով պատկերները դառնում էին բազմատեսակ և այդ բազմատեսակությունը լիովին արտացոլված է մեր այս գանձում: Պաշտամունքային թեմատիկայով հռոմեական դրամների շարքում մենք տեսնում ենք Մարսի, Վիկտորիայի ինչպես նաև Սատուրնի[1] և կամ Ապոլլոնի, իսկ այս վերջինիս հետ երգի ու բանաստեղծության աստվածուհի Եվտերպայի (№ 208), պատմության աստվածուհի Կլիոյի (№ 207) պատկերները կամ նրանց խորհրդանշանները: Մի ամբողջական շարք են կազմում Դիանայի և գեղեցկության աստվածուհի Վեներայի պատկերները: Պատերազմի աստված Մարսի կիսադեմ գլուխը դրամների վրա պատկերված է ռազմի խորհրդանշաններով (գերիներ, ընկած արշավող հեծյալի ոտքերի տակ, մարտի գալլիական շեփորներ ու վահաններ, զինվորական դրոշներ, տե՛ս № № 213, 243, 333): Հաղթանակի թևավոր դիցուհին ներկայացված է կամ բազմած գահին, կամ քառաձի մարտակառքը վարելիս (№ № 160, 287—291): Նկարչական տարբեր կատարումներով արտահայտված է ազատության աստվածուհին, որի հետ իբրև բնորոշ տեսիլ ցույց է տրված Ռոման ողջ հասակով, նիզակը ձեռքին (№ № 182, 235, 236) կամ Վեստայի տաճարի սխեմատիկ տեսքը (№ 218): Մի քանի տարբերակներով պատկերված է պտղաբերության ու հողագործության աստվածուհի Ցերերան, իր խորհրդանշաններով (մեղու, ցորենի հասկ), ներդաշնակված դրամի հակառակ կողմում պաշտամունքային բնույթի առարկաներով՝ բոցավառվող ջահ, սափոր, մոդական գավազան և այլն: Պատկերների մի այլ խումբ նվիրված է Հռոմի գերագույն աստծո՝ Յուպիտերի պաշտամունքին:

Յուպիտերը պատկերված է ինչպես միայնակ (№ 247), այնպես էլ Յունոնայի ու Միներվայի հետ (№ 154), իբրև Հռոմի անվտանգության և պաշտպանության հզոր եռաստվածության կենտրոնական ուժ: Բացի դրանից Յուպիտերը ցույց է տրված անգամ տակավին երիտասարդ դիմագծերով, անմորուս դեմքով (№ № 167—169), ի տարբերություն դիմաքանդակներից հայտնի իր ահարկու մորուքավոր տեսքի (№ 329): Հեթանոսական աստվածների պատ-

[1] Սատուրնի պաշտամունքը լայն տարածում ուներ Հռոմում, իբրև հողագործության, պտղաբերության, հավասարության, եղբայրության, առատության, հավերժության ու խաղաղության աստծո, Նրա տաճարը հանդիսանում էր նաև գանձատուն: Հեթանոս հռոմեացիները յուրաքանչյուր տարի դեկտեմբերի 17—19-ին սանձարձակ խնդությամբ նվերներ ու զոհաբերություններ էին մատուցում Սատուրնի կուռքին:

*կերների շարքում մենք տեսնում ենք Հռոմի գերագույն դիցուհի Յունոնայի (№ № 161, 178, 180, 198), ծովային ուժերի տիրակալ Նեպտունի (№ № 181, 212, 305, 355, 356), արևի լույսը բերող Ավրորայի (№ № 264—266), առողջություն և բարեկեցություն տվող Սալյուսի (№ № 232—234), հաջողություն ու երջանկություն պարգևող Բոնուս Էվենտուսի (№ № 189, 193, 199—201, 219, 220), անտառների ու արոտավայրերի տեր, հովիվների, ձկնորսների ու մեղվաբույծների պաշտպան Պանի (№ № 237—242), աստվածների մայր Կիբելայի (№ № 202, 230), բարեպաշտության դիցուհի Պիետասի (№ 244, 258), մարդկանց ուրախություն տվող, նրանցից թախիծը վանող, խաղողի ու գինեգործության աստված Դիոնիսի (№ 334), ամենատես և ամենահաղթ Սոլի (№ № 352, 357), ինչպես նաև առասպելական հերոսներ Հերակլեսի (№ № 179, 263) և Ոդիսեսի (№ 170) հրաշապատված սխրանքներից առանձին դրվագներ: Այդ կարգի պատկերներով դրամների խմբավորումը մեր առաջ ներկայացնում է Հռոմի հեթանոսական պանթեոնի հետևյալ աստվածներին, աստվածուհիներին և առասպելական էակներին.*

| | | |
|---|---|---|
| *Լիբերտաս տե՛ս դրամ* | | *№ № 182, 215—218, 235, 236, 306* |
| *Աննա Պերեննա* | » | *173* |
| *Ապոլլոն* | » | *163—166, 171, 207, 208, 209—211, 263, 292—297, 299, 345—351* |
| *Ավրորա* | » | *264—266* |
| *Բաքոս* | » | *334* |
| *Բոնուս Էվենտուս* | » | *189—193, 199—201, 219, 220* |
| *Դիանա* | » | *162, 186, 187, 231, 259—261, 345—351* |
| *Դիոսկուրներ* | » | *148* |
| *Էվտերպա* | » | *208* |
| *Կլիո* | » | *207* |
| *Կոնկորդիա* | » | *194—197* |
| *Մարս* | » | *150, 157, 213, 243, 333* |
| *Մեդուզա* | » | *264—266* |
| *Միներվա* | » | *154* |
| *Մերկուրիոս (Հերմես)* | » | *170* |
| *Յուպիտեր* | » | *154, 237—241, 247, 329* |
| *Յունոնա* | » | *154, 161, 178, 180, 198, 278—284* |
| *Նեպտուն* | » | *181, 212, 305, 355, 356* |
| *Պիետաս* | » | *244, 258* |
| *Ռոմա* | » | *148—156, 158—159, 235, 236, 285, 286* |
| *Սալյուս* | » | *232—234* |
| *Սիբելա* | » | *202, 230* |
| *Սոլ* | » | *321, 352, 357* |
| *Վակունա* | » | *205, 206* |
| *Վեներա* | » | *172, 176, 177, 252—257, 268, 276, 277* |
| *Վիկտորիա* | » | *151, 156, 158, 160, 173, 178, 235* |
| *Վիրտուս* | » | *183, 184* |
| *Ցերերա* | » | *203, 204, 229, 269—275* |
| *Ֆորտունա* | » | *246* |

*Պատկերների մյուս խումբը, ինչպես ասացինք, ռազմաքաղաքական տարբեր դեպքերին է վերաբերում, որոնք փառաբանում են Հանրապետության նշանավոր գործիչներին։ Այսպես, Քվինտոս Մինցիուս Թերմուսի դենարի վրա (№ 157) պատկերված է հերոսական այն արարքը, որով հայտնի է եղել նրա նախահայրը՝ կոնսուլ Ք. Թերմուսը, թշնամու հարձակումից վիրավոր ռազմիկին պաշտպանելիս։ Ա. Պոստումիուս Ալբինուսի դրամների վրա (№ № 174—175) ցույց է տրված մի կողմում՝ Իսպանիայի ալեգորիկ անձնավորումը, կանացի հերարձակ գլխով, իսկ մյուսում՝ հուժկու կեցվածքով իշխանական մի կերպարանք՝ Հռոմը, որը հնազանդություն ու խաղաղություն է հաստատում։*

*Ա. Պոստումիուս Ալբինուսը մ. թ. ա. 180 թվականին հռոմեական զորքերի գլուխն անցած կռվել է խռովահույզ Լիկուրգիայի լեռնային բնակիչների դեմ և 174 թվականին հռչակվել է որպես օրենքի խստագույն միջոցների ջատագով, որի փառաբանությանն էլ նվիրված է դրամը, թողարկված մ. թ. ա. 82 թվականին։ Կոնսուլ Մանիուս Աքվիլլիուսի դրամների վրա (№ № 183—184) նույնպես ալեգորիկ ձևով անձնավորված է Իսպանիան, ծնկաչոք ու գլխիկոր կնոջ կերպարանքով։ Նրա թևից բռնել է ու կամենում է բարձրացնել Մ. Աքվիլլիուսների տոհմի նահապետը։ Հայտնի է, որ նա 101 թվականին հռոմեական զորքերով գրավեց Սիցիլիան և ճնշեց ստրուկների ապստամբությունը։ Նույն դրամի առաջին երեսին արիության դիցուհի Վիրտուսի պատկերն է, որով և լրացվում է Աքվիլլիուսների տոհմի գովքը։ Մի այլ դրամի վրա (№ 185) պատկերված է սաբինական թագավոր Տատիուսի կիսադեմ գլուխը, կարճ մորուքով և առնական դիմագծերով։ Տատիուսը հռոմեական ավանդությունների մեջ հրաշապատված այն թագավորն է, որ իր ցեղի առևանգված աղջիկների պատվի համար կռվել է հռոմեացիների դեմ, սակայն վերջում հաշտվելով, Ռոմուլոսի հետ, ճանաչվել է Հռոմի կառավարիչ (մ. թ. ա. 744 թ.)։ Հռոմի փողերանոցի մագիստրոսը Տատիուսի պատկերով որոշակիորեն ակնարկում է իր ծագումը, սերված սաբինական թագավորական տոհմից։ Մի ուրիշ դենարի վրա (№ 214) պատկերված են երկու իրար նման, սակայն տարբեր անհատականության առնական գլուխներ, մեկը՝ Գայուս Սերվիլիուս Ահալան է, մյուսը՝ Լ. Յունիուս Բրուտոսը, այն կոնսուլը, որի քաղաքական վարքագծի փառաբանմանն են նվիրված ևս մի քանի դրամներ՝ թողարկված 60—59 թվականներին։ Այդ դենարների (№ № 215—217) պատկերատիպը հիշեցնում է Լ. Յ. Բրուտոսի կյանքից մի դրվագ, երբ նա մունետիկների և զինված լիկտորների ուղեկցությամբ գնում է իր սեփական որդիներին գլխատելու արարողությանը։ Ավանդությամբ հիշվում է, որ Լ. Յունիուս Բրուտոսը հայտնաբերել էր (մ. թ. ա. 509 թ.) դավադրություն Հռոմի դեմ, որին մեղսակից էին նաև իր որդիները։*

*Բրուտոսը զոհվել է էտրուսկների դեմ մղած կռվում և Սենատի որոշմամբ Կապիտոլիումում հուշարձան կանգնեցվեց նրա պատվին։ Դրամները թողարկող Քվինտոս Կեպիո Բրուտոսը այդ պատկերով կամեցել է տարածել իր տոհմի փառքը։ Մի քանի դրամներ (№ № 194—197) իրենց պատկերներով ակնարկում են ռազմական այն հաղթանակը, որ հռոմեական բանակը Լ. Էմիլիուս Պավլոսի գլխավորությամբ ունեցավ Մակեդոնիայի թագավոր Պերսևսի դեմ՝ Պիդնայի ճակատամարտում մ. թ. ա. 168 թվականին։ Դրամի փոքրիկ տարածության վրա խիստ լակոնիկ ձևով ներկայացված է թշնամու պարտությունը*

հաստատող զենքերի ու զրահների հուշարձանը, որի ձախ կողմում շղթայակապ կանգնած է Պերսեյն իր երկու որդիների հետ, իսկ աջում՝ սուրը ձեռքին, խրոխտ դիրքով Էմիլիուս Պավլուսը։ Վերջինս մ. թ. ա. 182 թ. պրետոր էր Իսպանիայում, իսկ 168 թ. չնայած իր տարիքին, հռոմեական զորքերով ասպատակեց Հունաստանը և դաժանորեն ճնշեց հույների ապստամբությունը՝ կորզելով 200 միլիոն սեստերցիայի հասնող հարստություն։ Եվ ահա նրա զարմից սերված Պավլլուս Էմիլիուս Լեպիդուսը 90 տարի անց սենատի հրամանով մասսայաբար թողարկում է հիշյալ պատկերատիպի արծաթ դրամներ (№ № 194—197), որոնց մի կողմի վրա դրոշմած է Հռոմի քաղաքացիական համաձայնության (CONCORDIA) աստվածուհու գլուխը։ Հետաքրքրական են Մ. Էմիլիուս Սկավրուս և Պուբլիուս Հիպսեուսի անուններով թողարկված հռոմեական դենարները (№ № 221—223)։ Դրամի մի կողմի վրա ցույց է տրված ուղտը կանգնած, իսկ նրա առջևում ծնկաչոք մարդկային մի կերպարանք՝ անձնավորումն Արաբիայի թագավոր Արետասի, որը կռվել է Հռոմի դեմ Սիրիայում, սակայն մ. թ. ա. 64 թ. պարտվել էր Պոմպեոսի զորքերից և հետագայում թեև կրկին գլուխ բարձրացրեց, բայց նորից պարտվեց, այս անգամ հռոմեացի զորավար Սկավրոսից։ Վերջինիս անվան հիշատակությամբ թողարկված են տվյալ պատկերատիպի արծաթ դրամները։ Փորագրիչ-քանդակագործը պատվիրված թեմայի համար ընտրել է Արաբիայի համար բնորոշ ուղտի պատկերը, որպես խորհրդանիշն այդ երկրի թագավորության, իսկ նրա հակառակ կողմում ցույց տվել Հռոմի գերագույն աստծուն՝ Յուպիտերին մարտակառքի վրա, որի ամենակարող կամքի հետ է կապել հռոմեացի զորքերի հաղթանակը։ Մ. թ. ա. 56 թ. Լուցիուս Մարցիուս Փիլիպոսի դրամների վրա (№ № 226—228) պատկերված է Անկուս Մարցիուսի կիսադեմ գլուխը, զարդարված արքայական ժապավենով և մի փոքր առանձին ցույց է տրված մոգական գավազան։ Հռոմի պատմական ավանդությունների մեջ Անկուս Մարցիուսը հիշվում է ըստ կարգի IV թագավորը, հորջորջված իբրև հեթանոսական կրոնի, հողագործության և առևտրի, ինչպես նաև անվտանգության պաշտպան։ Եվ ահա այդ թագավորի զարմից սերված Լուցիուս Մարցիուս Փիլիպոսը իր անունով թողարկված դրամների պատկերներով գովերգում է սեփական տոհմը։ Նույն գաղափարն է արտացոլված Դեցիմուս Պոստումիուս Ալբինուսի, մ. թ. ա. 49 թ. թողարկած դրամում (№ 245)։ Ցույց է տրված Կոնսուլ Պ. Ալբինուսի պատկերը, որը Հռոմի քաղաքական պատմության մեջ նշանավոր է եղել իբրև իրավագետ ու պատմաբան։ Մ. թ. ա. 44—40 թվականների մի քանի դրամների (№ № 300—304, 354) վրա պատկերված է Հուլիոս Կեսարի կիսադեմ գլուխը։ Եթե նկատի ունենանք, որ Հ. Կեսարին սպանեցին 44 թ. մարտի 15-ին, ապա հարկ է ընդունել, որ տվյալ դրամներից մասնավորապես Պ. Սեպուլլիուս Մակրի և Լ. Էմիլիուս Բուկայի անուններով դենարները (№ № 300, 301, 302, 303) թողարկվել են թերևս այդ վեհապետի կենդանության օրոք, մինչդեռ մնացած երկուսը շրջանառության մեջ են մտել Հ. Կեսարի մահից հետո՝ մ. թ. ա. 42 և 40 թթ. (№ № 304, 354)։ Ուշագրավ է, որ Հուլիոս Կեսարի դիմանկարով դրամներից մեկի վրա պատկերված է հասարակության մեջ օրինականության, արդարության և խաղաղության դիցուհու՝ Պակսի կերպարը (№ 304) և այդ խորհրդանշանը ինքնըստինքյան գովերգության տուրք է Հ. Կեսարի հրաշապատված կյանքի պատմությանը։ Պուբլիուս Կոռնելիուս Լենտուլուս Մարցելլինուսը ներկայացնելով կոնսուլ Կլավդիուս

*Մարցելլուսի գլուխը դրամի առաջին երեսի վրա (№ 307), ակնարկում է իր տոհմի նշանավոր նախահայրի համբավի մասին, իսկ հակառակ կողմում՝ ուրվագիծը բազիլիկ մի տաճարի, որի մուտքին մոտենում է ինքը՝ Կլավդիուսը՝ ձեռքին նվիրաբերություն։ Հռոմի հանրապետության մեջ Մ. Կլավդիուս Մարցելլուսը հինգ անգամ ընտրվել է կոնսուլ (222—208)։ Իր խիզախությամբ աչքի է ընկել հատկապես փյունիկյան II պատերազմում, ինչպես նաև վարել է հռոմեական լեգեոնների արշավանքը գալլերի դեմ. 216—215 թթ. պաշտպանել է Հռոմը և Հարավային Իտալիան, 212 թ. գրավել է Սիրակուզան, 210 թ. հաջողությամբ մարտնչել է Հանիբալի դեմ Իտալիայի լեռներում։ Նա սկզբնավորեց այն սովորությունը, երբ հաղթողները գրավված երկրներից Հռոմ էին փոխադրում ձեռք բերված գեղարվեստական նշանակության հուշարձանները և դրանցով զարդարում պաշտամունքային տաճարները։*

*Այդ բանը արտացոլված է մ. թ. ա. 38 թ. դենարի վրա, նվիրված հիշյալ կոնսուլի հիշատակին։*

*Տարբեր պատկերատիպի դրամներ են թողարկված Լուցիուս Լիվինեուս Ռեգուլոսի անունով, որոնցից մեկի վրա (№ 335) ցույց է տրված երկու գլադիատորների գոտեմարտը երեք առյուծների դեմ։ Փորագրիչ-քանդակագործը բարձր վարպետությամբ արտահայտել է այդ ահեղ տեսարանի ողջ լարվածությունը։ Մյուս կողմում ցույց է տրված մ. թ. ա. III դարի կեսերին Հռոմի նշանավոր կոնսուլ Լ. Ռեգուլոսի կիսադեմ գլուխը, որը հայտնի է եղել Կարթագենի դեմ մղած կռիվներում։ Նրա դիմանկարը ավելի հստակ պահպանված է նույն մագիստրոսի մի այլ դենարի վրա (№ 336), որի հակառակ կողմում՝ բեմի վրա պատկերված են զույգ բազկաթոռներ։ Ուշագրավ է, որ Լ. Լուցիուս Ռեգուլոսի անունով մեկ ուրիշ դրամի վրա (№ 337) պատկերված է Օկտավիանոսի կիսադեմ գլուխը՝ երիտասարդի դիմագծերով և որպես խորհրդանշան այդ դրամի, հակառակ կողմում ներկայացված է Վիկտորիան ողջ հասակով, դափնեպսակը ձեռքին։ Օկտավիանոսի դիմանկարով դրամները թողարկված են ինչպես միայնակ (№ № 327, 328, 331, 332), այնպես էլ Մարկոս Անտոնիոսի հետ (№ № 308—319, 322—325)։ Այդ երկու զորավարների դիմանկարներով դենարներից մի քանիսի վրա, բացի իրենց անձնանուններից հիշատակված է նաև Մարկոս Բարբատիուսի անունը (№ № 308—319), թեև կան օրինակներ, որոնք թողարկված են բացառապես առաջին երկուսի անուններով (№ № 322—325)։*

*Ընդհանրապես Մ. Անտոնիոսի և Օկտավիանոսի դիմանկարներով դրամների շարքում (№ № 308—319, 322, 323) Մարկոս Անտոնիոսը ներկայացված է միջին տարիքի, առավել առնական, իսկ Օկտավիանոսը տակավին երիտասարդ ու գեղեցիկ դիմագծերով։ Հայտնի է, որ Մ. Անտոնիոսը շնորհիվ Հուլիոս Կեսարի դարձել էր ժողովրդական տրիբուն և 50 թ. նշանակվել էր Իտալիայի կառավարիչ, իսկ արդեն 45 թ. ճանաչվել որպես կոնսուլ՝ աջակցելով Կեսարի պլանների իրագործմանը։ Վերջինիս մահից հետո նրան հաջողվեց տիրել Հռոմի գանձատանը և 42 թ. ստանալ լիակատար իշխանություն Հռոմի արևելյան պրովինցիաների վրա։ Մ. Անտոնիոսի դիմանկարներով դրամները թողարկված են պատկերատիպի լրացուցիչ խորհրդանշաններով։ Այսպես, մ. թ. ա. 36 թ. Արևելքում թողարկված դենարների վրա (№ 358—360) հիշատակված է թշնամու պարտությունը, նրա զենքն ու զրահը ցցի վրա բարձրացրած ձևով։ Մ. Անտոնիոսի մեկ այլ դրամով (№ 361) ներկայացված է հայկական թագը՝*

նետի ու աղեղի մեջ, ի նշան Հայաստանի պարտության: Հայոց արտաշեսյան թագը պատկերված է բուսական նախշերով, որոնցից վերև նշված են երեք ութթևանի աստղեր, ըստ որում կենտրոնականը համեմատաբար խոշոր է: Խույրն ավարտված է յոթ ժանիքաձև սրածայր ելուստներով: Ականջակալները և վզկալը եզրված են մարգարտաշար հատիկներով: Ուշագրավ է, որ այստեղ բոլորովին ցույց չեն տրված հայոց թագի վրա միշտ նշվող երկու արծիվների պատկերները, որոնք իբրև խորհրդանշան ներկայացված են Տիգրան Մեծի ու Արտավազդ II-ի դրամների վրա: Բացի դրանից, այն դենարների վրա, որոնք դրոշմված են Մ. Անտոնիոսի և Եգիպտոսի թագուհի Կլեոպատրայի պատկերներով (№ № 362—364), նույնպես ցույց է տրված հայկական թագը՝ Մ. Անտոնիոսի կիսադեմ գլխի հետևում, սակայն առանց ականջակալների, միայն վզկալով: Չնայած այն արտահայտված է սիմետրիկ ձևով, սակայն միանգամայն համապատասխանում է Արտավազդ II-ի կրած թագին: Այդ պատկերատիպի ողջ իմաստը բացահայտված է Մ. Անտոնիոսի գլխի շուրջ նշված լատինատառ խորագրերով ANTONI. ARMENIA. DEVICTA (Անտոնիոս Հայաստանը նվաճված): Անտոնիոսը պատկերված է մորուքով, լայն բացված բերանով, իսկ Կլեոպատրան վարսակալ ժապավենով և «Թագավորների թագուհի» արտակարգ տիտղոսով (№ № 362—364): Նույն պատկերատիպով մ. թ. ա. երեսնական թվականներին Անտիոքում թողարկված խոշոր արծաթյա հունատառ դրամների վրա (№ № 365—373) Կլեոպատրան պատկերված է կարգաքանդակների առավել մանրամասն արտահայտությամբ:

Այդ դրամներից մի քանիսի վրա, Մ. Անտոնիոսի խիտ ու կարճ գանգուրներով, խոժոռ հայացքով, ատլետիկ պարանոցով գլխի հետևում իբրև խորհրդանշան դրոշմված է ձիու գլուխ (№ № 370—371) և կամ R գիրը (№ 372): Հռոմեական հանրապետության պաշտոնական անձանց պատկերների թվում Մ. Անտոնիոսի դրամների վրա հանդես է բերված նաև նրա կրտսեր եղբոր՝ Լուցիուսի անկանոն դիմապատկերը, լայն ու ցցուն ծնոտով (№ 320) և կնոջ՝ Օկտավիայի գեղեցիկ գլուխը, արտահայտված պտտիկուն վարսերի սանրվածքի բնորոշ տեսքով (№ № 338—344):

Սակայն ինչպես Հռոմի ավանդություններում հիշատակվող թագավորների ու առաջին կոնսուլների, այնպես էլ անվանի զորավարներից շատերի դիմանկարները չեն դիտվել իբրև դիմանկարներ բառիս բուն իմաստով: Նրանց մի մասը կարծեցյալ է, ստեղծված հնուց մնացած հիշատակների հիման վրա: Հռոմեական դրամների մեջ իսկական դիմաքանդակ են Հուլիոս Կեսարի և նրանից հետո եկող հռոմեական գործիչների դիմանկարները: Հուլիոս Կեսարի դիմանկարը դրամի վրա կատարվել է նրա կենդանության օրոք՝ սենատի հատուկ որոշմամբ: Կեսարի մահից հետո հռոմեական պետության բոլոր նշանավոր դեմքերը արդեն մասսայաբար դրամների վրա դրոշմել էին տալիս իրենց դիմանկարները[1]:

Գանձի հռոմեական դրամները մեզ առաջ բացում են պաշտոնական անձանց դիմանկարների հետևյալ շարքը.

---

[1] *Jean Babelon*, Les monnaies racontent l'histoire, resurrection du Passé, Fayard, 1963, p. 14; *Зограф*, 71, 72.

| | | |
|---|---|---|
| Տատիուս | տե՛ս դրամ № | 185 |
| Լուցիուս Յունիուս | » | 214 |
| Գայուս Սերվիլիուս | » | 214 |
| Անկուս Մարցիուս | » | 226—228 |
| Ս. Պոստումիուս Ալբինուս | » | 245 |
| Լուցիուս Ռեգուլոս | » | 335, 336 |
| Հուլիոս Կեսար | » | 300—304, 354 |
| Մարկոս Անտոնիոս | » | 308—321, 338 |
| Գայուս Օկտավիանոս | » | 308—319, 322 |
| Լուցիուս Անտոնիոս | » | 320 |
| Կլավդիուս Մարցելլուս | » | 307 |
| Օկտավիա | » | 338—344 |
| Կլեոպատրա | » | 362—372 |

*Սակայն վերոհիշյալ դիմանկարներից բացի, հռոմեական դենարների վրա ներկայացված են առանձին երկրների ալեգորիկ անձնավորումները, օրինակ. Լուցիուս Հոստիլիուս Սասեռնայի դենարների վրա (№ № 259—262) Գալլիան անձնավորված է տխուր կույսի հերարձակ գլխով, իսկ Քվինտուս Մետելլուս Սցիպիոնի դրամի վրա Աֆրիկան ներկայացված է կանացի դեմքով, ճակատը զարդարված փղի կնճիթով (№ 267)։*

*Հ. Կեսարի Գալլիայում տարած հաղթանակների կապակցությամբ 50—49 թթ. թողարկված դրամների վրա պատկերված է փիղ, որը իր առաջին մի ոտքով օձին է ճզմում (№ № 248—250)։ Խորհրդանշանների մեջ ուշագրավ են նաև աշխատանքային գործիքները, ինչպես արորը կամ գութանը Տիբերիուս Սեմպրոնիուս Գրաքոսի մ. թ. ա. 40 թ. դրամի վրա (№ 354) և կամ բրիչը՝ պատկերված Լուցիուս Վալերիուս Ացիսկուլուսի մ. թ. ա. 45 թ. դրամի վրա (№ 299)։ Լրացուցիչ պատկերների մի այնպիսի բազմատեսակություն է դիտվում հռոմեական հանրապետության այս գանձից ծագած մ. թ. ա. I դարի դրամների վրա, որ նրանց սոսկ առարկայական խմբավորումը հետաքրքիր է իր հետևյալ բաժիններով։*

## ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԳՈՐԾԻՔՆԵՐ

| | | | |
|---|---|---|---|
| Ակցան | տե՛ս դրամ | №№ | 278—284 |
| Բրիչ | » | | 299 |
| Գութան | » | | 353, 354 |
| Զամբյուղ | » | | 338—344 |
| Ջնդան | » | | 278—284 |
| Խարիսխ | » | | 152, 285, 286 |
| Կացին | » | | 251 |
| Կարգին | » | | 200 |
| Մուրճ | » | | 189—193, 199 |
| Շերեփ | » | | 248—251 |
| Շեփոր | » | | 243 |
| Քնար | » | | 345—351 |

## ԶԵՆՔԵՐ ԵՎ ՌԱԶՄԻ ՊԱՐԱԳԱՆԵՐ



## ԿԵՆԴԱՆԱԿԱՆ ՊԱՏԿԵՐՆԵՐ

| | | |
|---|---|---|
| Առատության եղջյուր տե՛ս դրամներ | №№ | 177, 285, 286 |
| Եռաժանի | » | 181, 212, 305 |
| Խաղաղության գավազան | » | 170, 199—201 |
| | | 246, 258, 304 |
| Մոգական գավազան | » | 176, 219, 220 |
| | | 269—275, 326 |
| Ջահ | » | 203, 204, 248 |
| | | 269—275, 345 |
| Շանթ | » | 205, 206, 219 |
| | | 247, 326, 328 |
| Դափնեպսակ | » | 149, 225, 246 |
| Ծաղկեպսակ | » | 151 |
| Արմավենու ճյուղ | » | 160, 189—192 |
| | | 224, 246 |
| Հասկ (ցորենի) | » | 229, 267 |
| Կիսալուսին | » | 300, 352 |
| Աստղեր | » | 352 |

*Կան նաև դրամներ, որոնց պատկերատիպը նվիրված է ժամանակի քանդակագործության ու ճարտարապետական առանձին հուշարձանների արտացոլմանը։ Այսպես, Հռոմում մ. թ. ա. 82 թվականին թողարկված Պուբլիուս Կռեպուսիուսի դենարի վրա իր ամբողջական տեսքով ցույց է տրված արշավող հեծյալի արձանը (№ 171)։ Գրեթե նույնանման հուշարձանների պատկերներ դրոշմված են մ. թ. ա. 56 թ. Փիլիպպոսի (№ № 226—228), ինչպես նաև Օկտավիանոսի (№ 332) դրամների վրա։ Քվինտուս Կասսիուսի մ. թ. ա. 57 թ. արծաթ դրամի վրա սխեմատիկ տեսքով պատկերված է Վեստայի սյունազարդ տաճարը (№ 218)։ Բազիլիկ ճարտարապետական կոթողներ պատկերված են Պ. Կապիտոլինուսի (№ 329), Մարցելլինուսի (№ 307) և Մ. Անտոնիոսի (№ 321) մ. թ. ա. I դարի 40-ական թվականների դրամների վրա։*

*Դրանք տվյալ ժամանակաշրջանում գոյություն ունեցած նշանավոր հուշարձանների ընդօրինակություններ են։ Ամփոփելով գանձի հռոմեական դրամների վրա դրոշմված պատկերների քննությունը, կարելի է ասել, որ ընդհանուր առմամբ ներկայացված են պատկերատիպի 113 տարբեր տեսակներ, թողարկված հանրապետության 80 տարբեր պաշտոնական անձանց անունների հիշատակությամբ։ Այդ անուններից առավել հաճախ հանդիպում են.*

| | | | | |
|---|---|---|---|---|
| Մարկոս Անտոնիոս | մ. թ. ա. 42—31 թթ. | դրամ | 43 | հատ |
| Օկտավիանոս | » 41 | » | 28 | » |
| Հուլիոս Կեսար | » 54—47 | » | 19 | » |
| Տիտոս Կարիսիոս | » 45 | » | 14 | » |
| Մարկոս Բարբատիոս | » 41 | » | 12 | » |
| Պուբլիոս Կլոդիոս Մ. Ֆ. | » 41 | » | 8 | » |
| Մ. Պլետորիոս Ցեստիանոս | » 68—66 | » | 8 | » |
| Գ. Կոնսիդիոս Պետոս | » 45 | » | 7 | » |
| Գ. Վիբիոս Պանսա | » 48 | » | 7 | » |
| Լ. Հոստիլիոս Սասեռնա | » 48 | » | 5 | » |
| Լ. Սկրիբոնիոս Լիբո | » 55 | » | 5 | » |
| Պ. Էմիլիոս Լեպիդոս | » 55 | » | 4 | » |
| Քվինտոս Կեպիո Բրուտոս | » 60 | » | 4 | » |
| Լ. Կալպուռնիոս Պիզո Ֆրուգի | » 90—89 | » | 4 | » |

Մնացած 66 անունները հռոմեական դրամների վրա նշված են մեկից-երեք անգամ[1]: Հարկ է նկատել, որ հանդիպում են նաև նույն անձնանունները կրող դրամներ, որոնք ունեն տարբեր պատկերատիպեր.

| | | | | |
|---|---|---|---|---|
| Գ. Մամիլիոս Լիմետանոս, | 82—81 թթ. | պատկեր | I | Վեներա-մարտակառք |
| » | » | » | II | Մերկուրիոս-Ոդիսես |
| Ք. Պոմպոնիոս Մուզա, | 68—66 թթ. | » | I | Ապոլլոն-Կլիո |
| » | » | » | II | Ապոլլոն-Եվտերպա |
| Մ. Պլետորիոս Ցեստիանոս, | 68—66 թթ. | » | I | Բ. Էվենտուս-խաղաղութ. |
| » | » | » | II | Կիբելա-բազկաթոռներ |
| » | » | » | III | Ցերերա-սափոր |
| » | » | » | IV | Վականա-արծիվ |
| Գ. Վիբիոս Պանսա, | 49—48 թթ. | » | I | Լիբերտաս-Ռոմա |
| » | » | » | II | Պան-Յուպիտեր |
| Դ. Պոստումիոս Ալբինոս, | 49—48 թթ. | » | I | Մարս-շեփորներ |
| » | » | » | II | Առաքինություն-դաշինք |
| » | » | » | III | Ալբինոս-պսակ |
| Գ. Հուլիոս Կեսար, | 54—46 թթ. | » | I | Փիղ-գուշանշաններ |
| » | » | » | II | Վեներա-Էնեաս |
| » | » | » | III | Ցերերա-գուշակ |
| » | » | » | IV | Վեներա-հաղթանշան |
| Տիտոս Կարիսիոս, | 45 թ. | » | I | Յունոնա-դրամահատ |
| » | » | » | II | Ռոմա-գլոբուս |
| » | » | » | III | Վիկտորիա-քառաձի կառք |
| » | » | » | IV | Վիկտորիա-երկձի կառք |
| Գ. Կոնսիդիոս Պետոս, | 45 թ. | » | I | Ապոլլոն-բազկաթոռներ |
| » | » | » | II | Ապոլլոն-քառաձի կառք |
| Պ. Սեպուլլիոս Մակր, | 44 թ. | » | I | Հ. Կեսար-Վեներա |
| » | » | » | II | » նույնը այլաձև |

[1] Մանրամասնությունները տե՛ս Գանձի հռոմեական դրամների նկարագրության մեջ, № № 148—372:

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Պետիլլիոս | Կապիտոլինոս | 40—37 թթ. | պատկեր | I | Յուպիտեր-տաճար |
| » | » | » | » | II | Արծիվ-տաճար |
| Լ. Լիվինեիոս | Ռեգուլոս | 42—39 թթ. | » | I | Ռեգուլոս-գլադիատորներ |
| » | » | » | » | II | » բազկաթոռներ |
| » | » | » | » | III | » Վիկտորիա |
| Տ. Սեմպրոնիոս | Գրաքոս, | 40—37 թթ. | » | I | Օկտավիանոս-արծիվ |
| » | » | » | » | II | Հ. Կեսար-գալժան |
| Մարկոս | Անտոնիոս, | 43—31 թթ. | » | I | Մ. Անտոնիոս-Հելիոսի տաճարը |
| » | » | » | » | II | » Օկտավիանոս |
| » | » | » | » | III | » Լուցիուս-Անտոնիոս |
| » | » | » | » | IV | » պաշտանշաններ |
| » | » | » | » | V | » Օկտավիա |
| » | » | » | » | VI | » Հելիոս |
| » | » | » | » | VII | » հաղթանշան |
| » | » | » | » | VIII | » Հայոց թագը |
| » | » | » | » | IX | » Կլեոպատրա |
| Գ. Օկտավիանոս, | | 41—39 թթ. | » | I | Օկտավիանոս-հուշարձան |
| » | | » | » | II | » բազկաթոռներ |
| » | | » | » | III | » շանթ |
| » | | » | » | IV | » խաղաղություն |
| » | | » | » | V | » Մարս-արծիվ, հաղթանշան |

*Վերոհիշյալ տվյալները ցույց են տալիս, որ պատկերատիպի բազմազանության տեսակետից առավել բազմաթիվ են հանրապետության վերջին շրջանի դրամները՝ թողարկված մասնավորապես Մարկոս Անտոնիոսի և Օկտավիանոսի դիմանկարներով ու սրանց անվան հիշատակությամբ։ Դրանցից հետո միայն գալիս են Հուլիոս Կեսարի, Տիտոս Կառիսիուսի, Մ. Պլետորիուս Ցեստիանուսի անուններով դենարները։ Մնացած օրինակները ներկայացվում են պատկերատիպի մեկից երեք տեսակներով։ Միավորների զուտ քանակական հարաբերությամբ նույնպես, Մարկոս Անտոնիոսի անվան դրամները այդ ողջ զանգվածի մեջ կազմում են գերակշռող մասը։ Թողարկված լինելով Հռոմի արևելյան և փոքրասիական պրովինցիաներում մ. թ. ա. I դարի 41—31 թվականներին, դրանք, ինչպես երևում է, ավելի անմիջական տարածում ունեին Հայաստանում։ Բացառված չէ նաև այն հավանականությունը, որ Մ. Անտոնիոսի ըստ պատկերատիպի, Հայաստանին վերաբերող դրամները (№ № 361—363) թողարկված լինեն թերևս Հայաստանում, նրա մայրաքաղաք Արտաշատում, որի փողերանոցը գործում էր Արտավազդ II-ի իշխանության վերջին տարիներին, հռոմեական զորքերի դեպի հայոց երկիրը վարած արշավանքների նախօրեին։*

*Այդ առումով մինչև օրս եվրոպական գրականության մեջ ընդունված Մարկոս Անտոնիոսի դրամների Արևելքում և Փոքր Ասիայում թողարկված լինելու փաստը այժմ ճշտվում է և ավելի որոշակի դառնում Սասնակունքի գանձի տվյալների համաձայն։*

# ԴՐԱՄՆԵՐԻ ԿՇՌԱՅԻՆ ՀԱՄԱԿԱՐԳԸ

Քննության առնված 373 արծաթյա դրամների ընդհանուր կշիռը 2758,84 գրամ է։ Հելլենիստական թագավորություններին պատկանող 146 դրամների միասնական քաշը 1743,76 գրամ է, իսկ հռոմեական հանրապետության՝ 1015,08 գրամ (225 հատ)։ Չնայած վերջինս քանակապես 79 միավորով ավելի է, սակայն 728,68 գրամով պակաս է։ Տարբերությունը պայմանավորված է հելլենիստական դրամների մեջ առավելապես տետրադրախմաների, իսկ հռոմեականների մեջ՝ դենարների կուտակմամբ։ Դրանց յուրաքանչյուր միավորի միմյանց նկատմամբ ունեցած կշռային հարաբերությունն արտահայտվում է մոտ 1 : 4 չափով։ Ընդհանրապես մակեդոնական, սելևկյան, պարթևական, հայկական, պոնտական, կապադովկիական և փյունիկյան դրամական միավորներն իրենց կշռային տվյալներով թողարկված են ատտիկյան կշռային սիստեմի սկզբունքով։

Արմատավորված լինելով բուն Հունաստանում դեռևս մ. թ. ա. VI դարի երկրորդ կեսին, ատտիկյան կշռային սիստեմը միջազգային առևտրում լայն տարածում գտավ Ալեքսանդր Մակեդոնացու կողմից նվաճված երկրներում։ Ապրանքա-փոխանակությունը կատարվում էր հիմնականում արծաթով։ Ոսկին ուներ առավելապես հաշվային նշանակություն։

Այդ սիստեմի հիմնական միավորը արծաթի ասպարեզում դրախման էր, որ թողարկվում էր 4,36 գրամ քաշով։

Մասսայաբար թողարկվում էին դրախմաներ և տետրադրախմաներ, իսկ մնացած միավորները լայն շրջանառության համար բնորոշ չեն եղել։ Ալեքսանդր Մակեդոնացու դրամները նկատելիորեն մաշված են և իրենց կշիռներով ատտիկյան սկզբունքով սահմանված քաշից պակաս են մոտ 0,60 գրամով։ Սակայն այդ նվազումը առաջացել է ժամանակի ընթացքում, եթե նկատի ունենանք, որ մակեդոնական հիշյալ դրամներն իրենց ծագմամբ մոտ 300 տարով ավելի վաղ են շրջանառության մեջ մտել, քան գանձի վերջին դրամները և բնականաբար կարող են ավելի շատ մաշված լինել։

Սելևկյան դրամները բոլորն էլ տետրադրախմաներ են (57 հատ), որոնց միջին քաշը 14,50 գրամ է, ըստ որում դրանցից ամենաթեթևը 13,00 գրամ է, իսկ ամենածանրը՝ 16,80 գրամ։

Պարթևական խմբի դրամների մեջ (22 հատ) չկա և ոչ մի տետրադրախմա։ Դրանք բոլորն էլ դրախմաներ են՝ 3,46 գրամ միջին քաշով, թեև կան 3,60—3,75 գրամով առանձին օրինակներ։ Ատտիկյան նորմայի կշիռներով հանդես են գալիս նաև հայկական դրամները (10 հատ), որոնց միջին քաշը դրախմայի համար կազմում է 4,11 գրամ, իսկ տետրադրախմայինը՝ 15,63 գրամ։ Կապադովկիական տետրադրախմաներ գանձում չկան և դա պատահական չէ, որովհետև ընդհանրապես նրանք հազվագյուտ են։ Կապադովկիայում դրվագված դրախմաների (8 հատ) միջին քաշը կազմում է 3,82 գրամ։ Ատտիկյան դրամական սիստեմի սկզբունքով է թողարկված նաև Պոնտոսի թագավորության տետրադրախման իր 16,65 գրամ քաշով, թեև աննշան (0,8 գրամ) այն պակաս է օրինական չափից։

Փյունիկյան քաղաքների դրամները բացառապես տետրադրախմաներ են (39 հատ), որոնց միջին կշիռը կազմում է 14,23 գրամ։ Սրանց հիմնական մասը (37 հատ) վերաբերում է Տյուրոս քաղաքին, իսկ Սիդոնի և Արադոսի եզակի

տետրադրախմաներն իրենց կշիռներով (14 գրամ և 15,10 գրամ) նույնպես հարում են հելլենիստական արևելքում իշխող ատտիկյան սիստեմին։

Սիրիայի Անտիոք քաղաքի մ. թ. ա. 38—31 թթ. Մարկոս Անտոնիոսի և Կլեոպատրայի պատկերներով տետրադրախմաները (8 հատ) իրենց ծանրության միջին քաշով (15,18 գրամ) վկայում են, որ հռոմեական տիրակալության ծաղկման շրջանում անգամ, ատտիկյան դրամական սիստեմը Մերձավոր Արևելքում տակավին չէր խախտվել։ Ավելին, հռոմեական հանրապետության դրամական սիստեմը, ունենալով կշիռների ստորաբաժանման իր ներքին օրինաչափությունը, արծաթի հիմնական միավորի (դենարի) գծով համակերպվեց ատտիկյան սիստեմին։ Հռոմեական հանրապետության դրամական տնտեսության մեջ մ. թ. ա. 269 թվականից մասսայաբար թողարկվող արծաթյա դենարի օրինական կշիռը կազմում էր հռոմեական ֆունտի1/72 մասը կամ 4,55 գրամ։ Հետագայում պետական ռեֆորմով (217 թիվ) այդ միավորի կշիռը նվազում է, սահմանվելով ֆունտի1/84 մասը կամ 3,90 գրամ[1]։

Սակայն հնամյա ատտիկյան սիստեմով թողարկվող դրախման էլ արդեն մ. թ. ա. II դարում նշվում է 4,04 գրամի չափով[2], ուստի հավասարություն էր ստեղծվել դրախմայի ու դենարի կշռային չափերի միջև։ Մեկ ոսկյա ստատերը (8,10—8,60 գրամ) այդ ժամանակաշրջանում միջազգային շրջանառության մեջ ընդունվում էր 20 դրախմայի կամ 5 տետրադրախմայի փոխարեն և նույն համարժեքությամբ հանդես էր գալիս հռոմեական միավորը, այնքանով, որքանով մեկ ատտիկյան դրախման արծաթի կշռային իմաստով հավասարազոր էր մեկ հռոմեական դենարի։ Գանձում եղած հռոմեական 210 դենարների կշիռները վկայում են, որ նրանց միջին քաշը հավասար է 3,86 գրամի, ըստ որում առավել շատ են 4 գրամանոց դենարները։ Հետևապես հռոմեական դրամների հետ հավասարապես փոխանակվում էին ինչպես մակեդոնական, այնպես էլ հայկական, պարթևական, կապադովկիական ու ատտիկյան սիստեմի այլ արծաթյա դրամներ։ Միանգամայն ուրույն դրամական սիստեմ են ներկայացնում արծաթյա կիստոֆորների կշռային տվյալների օրինակները։ Գանձում դրանք 14 հատ են, որոնց միջին կշիռը մեկ միավորի համար նշվում է 12,07 գրամ։ Այդ սիստեմի հիմքում ընկած էր դեռևս մ. թ. ա. VI դարում հայտնի խիոսյան կշռային չափը, որի համաձայն դրախման թողարկվում էր 3,90 գրամ քաշով, իսկ տետրադրախման՝ 15,60 գրամ։ Հետագայում նույն քաշի արծաթ դրամներ թողարկվում էին Թրակիայում, Փոքր Ասիայի մի շարք այլ քաղաքներում և հատկապես Ռոդոս կղզում, ուր V—IV դարերում դրանք շատ ավելի երկար հարատևելով, անվանվեցին արդեն իբրև ռոդոսյան կշռային սիստեմի դրամներ։ Սակայն գնալով աստիճանաբար նվազեց նրանց քաշը. եթե IV դարում մեկ ռոդոսյան արծաթյա տետրադրախման կշռում էր 15,50 գրամ, ապա III դարում թողարկվում էր 13,00 գրամով, իսկ ավելի ուշ՝ 12—12,5 գրամ կշռով։ Հենց վերջին այդ նվազեցված չափով էլ մ. թ. ա. II դարի առաջին կեսին հռոմեական իշխանությանը ենթարկվող փոքրասիական քաղաքները շրջանառության մեջ են դնում իրենց տետրադրախմաները։

Գանձում եղած տվյալներից երևում է, որ այդպիսի թեթև քաշի տետրադրախմաների առավելագույն մասը վերաբերում է Պերգամոն քաղաքին, թեև կան Էփեսոսում դրվագված օրինակներ։ Առևտրական գործարքներում դրանք

[1] *Зограф*, 51, 52.
[2] *Schroetter*, 160.





*Իրան, Արշակունի Գոտարզ I, 90—80 թթ.։*
*Արծաթ դրամ, մեծացված 4×*





*Իրան, Արշակունի Միհրդատ III, 57—54 թթ.։*
*Արծաթ դրամ, մեծացված 4×*





Իրան, Արշակունի Օրոդես II, 57—38 թթ.։
Արծաթ դրամ, մեծացված 4×





*Հայաստան, Տիգրան Մեծ, մ. թ. ա. 76 թ.։*
*Արծաթ դրամ, մեծացված 4×*





*Հայաստան, Տիգրան Մեծ, մ. թ. ա. 74 թ.։*
*Արծաթ չորեքդրամ, մեծացված 4×*





Հայաստան, Արտավազդ II, մ. թ. ա. 38 թ.։
Արծաթ դրամ, մեծացված 4×






Կապադովկիա, Արիարաթ IV, մ. թ. ա. 127 թ.։
Արծաթ դրամ, մեծացված 4×






Պոնտոս, Միհրդատ VI Եվպատոր, մ. թ. ա. 71 թ.։
Տետրադրախմա, մեծացված 4×

*փոխանակվում էին ատտիկյան դրախմաների կամ նրանց հավասարազոր հռոմեական դենարների հետ՝ 1։3 հարաբերությամբ, ելնելով այն իրողությունից, որ արծաթի կշռով թեթև քաշի դրախմաները կազմում էին հռոմեական դենարի ³/₄ մասը։ Այդ ամենով հանդերձ հարկ է նկատի ունենալ նաև մի որոշակի իրողություն, որ գանձում կուտակված բոլոր դրամներն (IV—I) դրըվագվել են ձեռքի աշխատանքի պայմաններում։ Արծաթյա կլորակների ձուլման և հղկման միջոցին կշռային չափումները չունեին այն ճշգրտությունը, որ հատուկ է մեքենայացված պրոցեսին։ Ուստի դրամները բացի շրջանառության մեջ տարբեր աստիճանով մաշվելուց, նախապես հանդես էին գալիս հիմնական չափից շեղ, թեկուզ խիստ աննշան տատանումներով։*

## ԿՇՌԱՅԻՆ ՉԱՓՈՒՄՆԵՐԻ ԱՂՅՈՒՍԱԿ

### Դրախմաներ

### *Արծաթ դրամներ*

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| Մակեդոնական | 3,80 | գրամ | 1 հատ | Կապադովկիական | 4,03 | գրամ | 1 հատ |
| Պարթևական | 2,90 | » | » | » | 4,00 | » | » |
| » | 3,07 | » | » | » | 3,85 | » | » |
| » | 3,25 | » | » | » | 3,80 | » | » |
| » | 3,37 | » | » | » | 3,72 | » | » |
| » | 3,38 | » | » | » | 3,60 | » | » |
| » | 3,40 | » | » | » | 3,55 | » | » |
| » | 3,42 | » | » | Հայկական | 4,17 | » | » |
| » | 3,45 | » | » | » | 4,15 | » | » |
| » | 3,80 | » | » | » | 4,11 | » | » |
| » | 3,81 | » | » | » | 4,05 | » | » |
| » | 3,90 | » | » | » | 4,02 | » | » |
| » | 3,97 | » | » | » | 4,00 | » | » |
| » | 4,05 | » | » | » | 3,82 | » | » |
| » | 3,60 | » | 2 հատ | | | | |
| » | 3,70 | » | » | | | | |
| » | 3,75 | » | » | | | | |
| » | 3,65 | » | 3 հատ | | | | |

### Տետրադրախմաներ
### *(Արծաթ չորեքդրամյաններ)*

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| Մակեդոնական | 16,77 | գրամ | 1 հատ | Սելևկյան | 14,00 | գրամ | 3 հատ |
| Սելևկյան | 13,00 | » | » | » | 14,89 | » | » |
| » | 13,73 | » | » | » | 15,10 | » | » |
| » | 13,80 | » | » | » | 15,15 | » | » |
| » | 13,95 | » | » | » | 15,20 | » | » |
| » | 14,18 | » | » | Փյունիկյան | 13,85 | » | 1 հատ |
| » | 14,35 | » | » | » | 14,10 | » | » |
| » | 14,45 | » | » | » | 14,13 | » | » |
| » | 14,50 | » | » | » | 14,18 | » | » |



4—758

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| Սևեկյան | 14,77 | դրամ | 1 հատ | Փլանիկյան | 14,33 | դրամ | 1 » |
| » | 14,84 | » | » | » | 14,36 | » | » |
| » | 14,85 | » | » | » | 15,10 | » | » |
| » | 14,95 | » | » | » | 13,90 | » | 2 հատ |
| » | 15,02 | » | » | » | 14,22 | » | » |
| » | 15,05 | » | » | » | 14,25 | » | » |
| » | 15,06 | » | » | » | 14,00 | » | 3 հատ |
| » | 15,13 | » | » | » | 14,27 | » | » |
| » | 15,18 | » | » | » | 14,40 | » | » |
| » | 15,35 | » | » | » | 14,20 | » | 6 հատ |
| » | 15,43 | » | » | » | 14,30 | » | 11 հատ |
| » | 15,85 | » | » | Պոնտական | 16,65 | » | 1 » |
| » | 15,88 | » | » | Հայկական | 16,42 | » | » » |
| » | 16,00 | » | » | » | 15,50 | » | » » |
| » | 16,35 | » | » | » | 14,99 | » | » » |
| » | 16,40 | » | » | Հռոմեական | 14,58 | » | » » |
| » | 16,60 | » | » | » | 14,93 | » | » » |
| » | 16,62 | » | » | » | 15,03 | » | » » |
| » | 16,70 | » | » | » | 15,10 | » | » » |
| » | 16,80 | » | » | » | 15,25 | » | » » |
| » | 13,90 | » | 2 հատ | » | 15,35 | » | » » |
| » | 14,65 | » | » | » | 15,43 | » | » » |
| » | 14,75 | » | » | » | 15,73 | » | » » |
| » | 14,90 | » | » | Փ. Ասիայի | 11,64 | » | » » |
| » | 16,10 | » | » | Հռոմեական | 11,75 | » | » » |
| » | 16,30 | » | » | կիստոֆոր-ներ | 11,90 | » | » » |

Փ. Ասիայի հռոմեական կիստոֆորներ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 12,05 | դրամ | 1 հատ | 12,00 | դրամ | 1 հատ |
| 12,10 | » | » | 12,23 | » | » |
| 12,15 | » | » | 12,25 | » | » |
| 12,16 | » | » | 12,28 | » | » |
| 12,18 | » | » | 12,20 | » | 2 հատ |

Հռոմեական դենարներ
(Արծաթ դրամյաններ)

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 3,23 | դրամ | 1 հատ | 3,79 | դրամ | 1 հատ |
| 3,27 | » | » | 3,84 | » | » |
| 3,30 | » | » | 3,91 | » | » |
| 3,50 | » | » | 3,94 | » | » |
| 3,58 | » | » | 3,97 | » | » |
| 3,67 | » | » | 4,01 | » | » |
| 3,68 | » | » | 4,03 | » | » |
| 3,69 | » | » | 4,04 | » | » |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 4,08 | գրամ | 1 ժամ | 3,77 | գրամ | 4 ժամ |
| 4,12 | » | » | 3,82 | » | » |
| 4,14 | » | » | 3,86 | » | » |
| 4,15 | » | » | 3,93 | » | » |
| 4,17 | » | » | 3,96 | » | » |
| 4,18 | » | » | 3,98 | » | » |
| 4,20 | » | » | 4,05 | » | » |
| 4,25 | » | » | 3,83 | » | 5 » |
| 3,53 | » | 2 ժամ | 3,88 | » | » |
| 3,55 | » | » | 3,92 | » | » |
| 3,56 | » | » | 4,10 | » | » |
| 3,62 | » | » | 3,75 | » | 6 » |
| 3,73 | » | » | 3,60 | » | 7 » |
| 3,81 | » | » | 3,70 | » | 8 » |
| 3,99 | » | » | 3,78 | » | 8 » |
| 4,02 | » | » | 3,87 | » | 10 » |
| 3,74 | » | 3 ժամ | 3,90 | » | 10 » |
| 3,89 | » | » | 3,85 | » | 11 » |
| 4,07 | » | » | 3,80 | » | 12 » |
| 3,65 | » | 4 ժամ | 3,95 | » | 12 » |
| 3,72 | » | » | 4,00 | » | 21 » |

## ԳԱՆՁԻ ՍՏԵՂԾՄԱՆ ԵՎ ԹԱՂՄԱՆ ՄԱՍԻՆ

*Սառնակունքում դտնված գանձի մեջ, ինչպես տեսանք, դրամական միավորների գերակշռող զանգվածը վերաբերում է մ. թ. ա. I դարի քառասնական թվականներին։*

*Աշխարհագրական առումով դրամների ընդհանուր քանակը կարելի է ստորաբաժանել երեք գլխավոր խմբի.*

*Միջերկրականի արևմտյան շրջաններից . . . . . . 172 գրամ*
*Միջերկրականի փոքրասիական շրջաններից . . . . 62 »*
*Մերձավոր Արևելքի երկրներից . . . . . . . . . . 139 »*

*Ընդամենը 373 գրամ*

*Առաջին խմբում միավորված են Հռոմից, Իտալիայի հյուսիսային մասերից, Գալլիայից, Իսպանիայից, Սիցիլիայից դուրս եկած դրամները։ Երկրորդ խմբում ներկայացված են Պերգամոնի և Էփեսոսի կիստոֆորները, Պոնտոսի ու Կապադովկիայի դրամները, ինչպես նաև հռոմեական այն դենարները, որոնք թողարկվել են Հունաստանում և փոքրասիական այլ քաղաքներում։ Երրորդ խմբում հիմնականում ամփոփված են փյունիկյան, սիրիական, պարթևական, հայկական դրամները և Մերձավոր Արևելքում և Աֆրիկայում թողարկված հռոմեական դրամները։ Դրանց աշխարհագրական ծագմամբ պայմանավորված այս ստորաբաժանումները արտացոլում են միջազգային առևտրի այն երեք նշանավոր ուղղությունները, որոնց հետ կարող է կապված լինել գանձի առաջացումը։ Վերոհիշյալ երեք շրջաններից առավել զանգվածային ներկայացված են արևմտա-եվրոպական և Մերձավոր Արևելքի երկր-*

ներից դուրս եկած դրամները։ Փոքրասիական ծագման դրամական միավորները քանակապես միջանկյալ խումբ են կազմում, ուստի շրջանառության ոլորտում հավասարապես կարող են առնչվել գլխավոր ուղղություններից մեկին կամ մյուսին, միաժամանակ այդ երկու ուղղությունները կապելով միմյանց հետ։ Հարկ է նկատել, որ Սառնակունքի գանձի վերլուծությունը պահանջում է հաշվի առնել հելլենիստական դրամների տարածվածության փաստը Հայկական լեռնաշխարհում, հատկապես Արտաշեսյանների քաղաքական իշխանության մեջ ընդգրկված տերիտորիաների վրա՝ մ. թ. ա. I դարի վերջերին։ Տարաբախտաբար մենք դեռևս չգիտենք թե հելլենիստական պատկերատիպի ինչպիսի դրամներ ու դրամական գանձեր են գտնվել պատմական Մեծ Հայքի հարավային ու արևմտյան գավառներում, մասնավորապես Տարոնում, Աղձնիքում, ինչպես նաև Փոքր Հայքում և Ծոփաց աշխարհում։

Մերձավոր արևելքի առումով դրամագիտական տեղագրություն (տոպոգրաֆիա) դեռևս կազմված չէ։ Սակայն Անդրկովկասի վերաբերյալ այն գոյություն ունի և Սովետական Հայաստանի տարածության վրա գտնված դրամագիտական նյութը հայտնի է մեզ։ Հետևաբար այդ նեղ սահմաններում կարելի է թերևս տեսնել, թե հելլենիստական նշանակության ինչպիսի դրամներ են գտնվել պատմական Հայաստանի հյուսիս-արևելյան ծայրամասում՝ Արաքս և Քուռ գետերի միջև ընկած շրջաններում։ Համեմատելով այդ տվյալները Սառնակունքի գանձում եղած դրամների հետ, հնարավոր է հիմնական գծերով նշել այն, ինչ բնորոշ է եղել Հայաստանի անդրկովկասյան մասի շրջանառության համար և դրանով իսկ զատորոշել արտաքին առևտրի մղումով հայկական քաղաքները թափանցած դրամական օտար խմբերը։ Վերջիններս արտացոլում են միջազգային առնչությունների այն ուղղությունները, որ հայոց երկիրն ունեցել է տվյալ ժամանակաշրջանում։

Այսպես, Սառնակունքի գանձի արևմտաեվրոպական ծագման 172 դրամներից 138-ը (մոտ 80 տոկոսը) դրվագված են Հռոմում։ Պաշտոնապես արձանագրված տեղեկություններից հայտնի է, որ Այրարատում, Շիրակում, Սյունիքում և վերջինիս մերձավոր վայրերում Հռոմեական հանրապետության արծաթե դենարները հաճախ չէ որ պատահում են, ուստի եղածներն էլ դեռևս չեն կարող հիմք ծառայել դատելու հելլենիստական Հայաստանի հյուսիս-արևելյան մասերում նրանց ունեցած զանգվածային տարածման մասին։ Հռոմեական հանրապետության արծաթյա դրամներից Հայկական ՍՍՀ տերիտորիայում հայտնաբերվել են.

Մ. թ. ա. 96—95 թթ. դենար՝ գտնված Երևանում 1953 թվականին

| | | | | |
|---|---|---|---|---|
| » | 43—41 | » | » | Բասարգեչարում, 1936 թվականին |
| » | 82—81 | » | » | Նարիմանովում, 1951 թվականին |

Այս երեք նմուշներից բացի մ. թ. ա. I դարի հռոմեական դենարներ գտնվել են Շամշադինի շրջանի Թռուզ գյուղում[1] և Էջմիածնի շրջանի Փարաքար գյուղի մոտ[2], ըստ որում Թռուզում գանձի մեջ, իսկ Փարաքարում հնագիտական պեղումներից։ Հայաստանի այս վայրերում գտնված հանրապետա-

[1] ՀՊԹ, № № 17431, 17446։

[2] ՀՊԹ, № 18305/1—7։ Գ. Ա. Տիրացյան, Փարաքարի աշտարակաձև դամբարանը և նման հուշարձաններ Հայաստանում և Առաջավոր Ասիայում։ «Բանբեր Երևանի համալսարանի», 1970, № 1։

կան դենարները ես դրվագվել են Հռոմ քաղաքում։ Իսպանիայից, Գալլիայից, Իտալիայի հյուսիսային կողմերից և Սիցիլիայից դուրս եկած Հռոմեական հանրապետության դենարները Հայաստանում հազվադեպ են հանդիպում։ Գանձում եղած փոքրասիական ծագում ունեցող դրամներից ո՛չ Պերգամոնի, Էփեսոսի և ո՛չ էլ Պոնտոսի ու Կապադովկիայի դրախմաները իրենց տարածվածությամբ բնորոշ չեն Մեծ Հայքի հյուսիս-արևելյան շրջանների համար։ Բավական է նշել, որ մինչև օրս Հայկական ՍՍՀ ողջ տարածվածության վրա այդ կարգի արծաթ դրամներից գտնվել են միայն երկու նմուշ[1]։

Գառնիում դամբարանների պեղումներից 1962 թ. հայտնաբերվեց կապադովկիական դրախման՝ Արիոբարզան I-ի (92—62) դիմանկարով և Ապարանի հանդում՝ կապադովկիական Արիարաթ IX (99—87) թագավորի արծաթ դրամը[2]։ Սակայն այս եղակի նմուշներն այնքան չնչին են, որ հազիվ թե կարողանան փոխել մեր պատկերացումը նրանց տարածվածության մասին։ Պոնտական տետրադրախմայի առկայությունը գանձում դեռևս մնում է իբրև եզակի երևույթ Հայկական ՍՍՀ տերիտորիայում։ Ինչ վերաբերում է գանձի՝ արևելյան երկրներում թողարկված դրամներին, ապա դրանցից Արաքսի հյուսիսային կողմերում հազվադեպ են փյունիկյան քաղաքների դրամները, ըստ որում եթե Արադոսի ու Սիդոնի տետրադրախմաները սույն առաջին անգամ և այն էլ եզակի օրինակներով են ներկայանում, ապա Տյուրոսից հայտնի էին երկու տետրադրախմաներ, գտնված Անիում[3] և Հայկական ՍՍՀ Կամոյի շրջանի Բադիկյան գյուղում[4]։ Վրաստանում և Ադրբեջանում նույնպես փյունիկյան դրամները հազվադեպ են։

Այլ է իրավիճակը՝ կապված սելևկյան և հատկապես պարթևական ու հայկական (արտաշեսյան) դրամների հետ։ Սելևկյան տետրադրախմաներ Հայաստանում գտնվել են տարբեր վայրերում։ Այսպես, Անտիոքոս VII Էվերգետոսի (138—129) տետրադրախմաներից, ճիշտ այն պատկերատիպով ինչ առկա են գանձում, մեկական օրինակ ի հայտ է եկել Քասախում, Ապարանում, Բջնի, Ծովինար և Ոսկեվազ գյուղերում[5]։ Փիլիպոս I Ֆիլադելփոսի (92—83) տետրադրախմաներից առանձին նմուշներ գտնվել են Արտաշատի մոտ, Իգդիրում և Արմավիրում[6]։ Գառնիի ամրոցում 1951 թվականին գտնվեց սելևկյան Անտիոքոս IV Էպիփանեսի (175—164) տետրադրախման[7]։ Սևանա լճի հյուսիս-արևմտյան ափին, Ելենովկա գյուղում, անցյալներում բացված է եղել գանձ, որի սելևկյան տետրադրախմաների հետ ծանոթացել է Ա. Ա. Լոգինովը[8]։ Մի ուրիշ գանձից սելևկյան Անտիոքոս VII Էվերգետոսի և Փիլիպոս I Ֆիլադելփոսի դիմանկարներով տետրադրախմաներ գտնվել են 1933 թ. գարնանը[9]։ Սելևկյան տետրադրախմաների գյուտեր նշվում են նաև Հայաստանին մերձավոր Ադրբեջանում[10]։ Հիշատակված վկայությունները թույլ են տալիս են-

---

1 ՀՊԹ, № 17815/2։

2 ՀՊԹ, № 14625։

3 ՀՊԹ, № 98։

4 ՀՊԹ, № 15245։

5 ՀՊԹ, №№ 15992, 14506, 14088, 8838։

6 ՀՊԹ, №№ 13574, 14508, 14326։

7 ՀՊԹ, № 17592։

8 *Пахомов*, I, № 22.

9 ՀՊԹ, №№ 12251, 12253—12255։

10 *Пахомов*, II, № 314: IX, № 2080.

թադրելու, որ սելևկյան արծաթ դրամները, մանավանդ Անտիոքոս VII էվերգետեսի և Փիլիպոս I Ֆիլադելփոսի պատկերներով Հայաստանում հազվադեպ չեն։ Սակայն դրանք լինելով բացառապես խոշոր արժենիշի միավորներ (տետրադրախմաներ) թափանցել են Քուռի և Արաքսի հովիտները, հավանաբար Սիրիայի հետ կապված արտաքին առևտրի շնորհիվ։ Սելևկյան արծաթ դրամների փոքր արժենիշի միավորներ (դրախմաներ) և առավել ևս պղնձյա դրամներ չեն գտնվել Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևելյան շրջաններում և ընդհանրապես ողջ Անդրկովկասում։ Մինչդեռ ներքին շուկայի մանր առուծախի համար պղնձյա դրամներն առաջնահերթ նշանակություն ունեն։ Դրամագյուտերը ցույց են տալիս, որ հելլենիստական դարաշրջանի վերջում (մ. թ. ա. I դար) Հայաստանի տեղական ապրանքա-փոխանակությունը սպասարկվել է գերազանցապես հայկական ու պարթևական դրամներով։ Հայկական դրամներից տարածված են եղել մեծ մասամբ Տիգրան Մեծի և շատ աննշան Արտավազդ II-ի դրախմաները։ Մեզ հայտնի տվյալներով Տիգրան Մեծի արծաթ դրամներից գտնվել են Անիում[1], Մարնեուլի շրջանի Խորակերտ վանքի մոտ[2] (Վրաց. ՍՍՀ), Ախալքալաքի Թաքձա գյուղում[3] (Վրաց. ՍՍՀ), Վերին Արտաշատում[4], Շամշադինի շրջանում[5], Էջմիածնի շրջանի Փարաքար գյուղի մոտ[6]. Կարյագինոյում (Ադրբեջանական ՍՍՀ)[7], Քութաիսիի շրջանում[8] (Վրաց. ՍՍՀ) և այլուր։

Տարաբախտաբար մենք դեռևս չունենք Տիգրան Մեծի օրոք թողարկված հայկական դրամների տարածման լրիվ տեղագրությունը։ Սակայն եղած տվյալներն Անդրկովկասում ուրվագծում են նրանց շրջանառության ոլորտը Արաքս և Քուռ գետերի միջև ընկած տարածության վրա։ Հայաստանի հարավային կողմերից հայտնի է միայն Մծբինի (Նիսիբին) դրամագյուտը, որից ծագում են Տիգրան Մեծի մի քանի պղնձյա դրամները[9]։ Ուշագրավ է, որ Սովետական Հայաստանի տերիտորիայում հաճախ են հանդիպում Տիգրան Մեծի դրախմաները, ըստ որում այն պատկերատիպով, որը թողարկվել է հայոց արքայի ΒΑΣΙΛΕΩΣ ΒΑΣΙΛΕΩΝ տիտղոսով և սակավադեպ են տետրադրախմաները։ Սառնակունքի գանձում ևս նշմարելի չափով արտացոլված է քանակային այդ հարաբերությունը. մենք ունենք տիգրանյան վեց դրախմաներ՝ երեք տետրադրախմաների դիմաց։

Հարկ է նկատել, որ Անդրկովկասում գտնված Տիգրան Մեծի տետրադրախմաների գերակշռող մասը դուրս է եկել Անտիոք քաղաքից։ Նրանց թափանցումը Մեծ Հայքի հյուսիս-արևելյան կողմերը պայմանավորված է եղել, ամենայն հավանականությամբ, Միջագետքի հետ ունեցած ապրանքափոխանակությամբ։

Արտավազդ II-ի դրամները հազվագյուտ են։ Թանգարաններում պահվող

---

1 ՀՊԹ, № 8916։

2 ՀՊԹ, № 17728։

3 ՀՊԹ, № 18797։

4 ՀՊԹ, № 17445։

5 ՀՊԹ, № № 18841—18844, 17384 (գանձ գտնված Թոռուղ գյուղում)։

6 Գ. Ա. Տիրացյան, նշվ. աշխ., տախտակ 1 և 2։

7 *Пахомов*. II, № 318.

8 Նույնը, I, № 25։

9 *Seyrig*, 86—88.

*նմուշների հայտնաբերման տվյալներ հայտնի չեն։ Հայաստանում գտնվածներից երկու դրախմա հայտնի են Սառնակունքի գանձից, իսկ մեկ հատ բացառիկ տետրադրախմա գտնվել է էջմիածնից ոչ հեռու, Փարաքար գյուղի մոտ[1]։ Այս սուղ վկայությունները հնարավորություն չեն ընձեռում դատելու Արտավազդ II-ի (56—34) օրոք թողարկված հայոց դրամների տարածվածության մասին։*

*Պարթևական դրամների մեջ Հայաստանում հայտնաբերվածների շարքում ավելի մեծ թիվ են կազմում Միհրդատ II (128—88) և հատկապես Օրոդես II (57—38) արքաների արծաթյա դրախմաները։ Սառնակունքի գանձում նույնպես պարթևական դրամների գերակշռող բաժինը կազմում են Օրոդես II-ի դրախմաները։ Վերջիններիս շրջանառության տեղական բնույթի մասին խոսում են նաև այդ արքաների պղնձյա դրամները, գտնված ոչ միայն առանձին օրինակներով, այլև ամբողջական գանձի ձևով[2]։ Հայաստանի դրամագիտական նյութի մեջ նշվում են նաև պարթևական Հրահատ II (138—127), Սանատրուկ (77—70), Հրահատ III (70—57), Միհրդատ III (57—54) և Հրահատ IV (32—2) թագավորների արծաթյա դրամները։*

*Հետաքրքրական են նաև Հայաստանի հարևան անդրկովկասյան շրջաններում գտնված գանձերը։ Արձանագրված են ընդամենը երկու գանձ, որոնցից մեկը բացվել է 1929 թ. Ադրբեջանական ՍՍՀ Բարդա գյուղի մոտ (հին Պարտավ քաղաքի ավերակներից ոչ հեռու), իսկ մյուսը նույնպես Ադրբեջանական ՍՍՀ Շամախու շրջանի Խընըսլի գյուղում՝ 1958 թվականին[3]։ Այս երկու գանձերը ամբողջությամբ չեն պահպանվել։*

*Բարդայի գանձից Ադրբեջանի պետական թանգարանում ներկայումս հավաքված են հետևյալ արծաթյա դրամները[4].*

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| *Ալեքսանդր Մակեդոնացի* | | *(330—323)* | *տետրադրախմա* | *1* | *հատ* |
| *Սիրիա, սելևկյան* | *Անտիոքոս* IV | *(175—164)* | » | *1* | » |
| » » | *Անտիոքոս* V | *(164—162)* | » | *1* | » |
| » » | *Դեմետրոս* I | *(162—150)* | » | *1* | » |
| » » | *Անտիոքոս* VII | *(138—129)* | » | *2* | » |
| | | *Ընդամենը* | » | *6* | » |

*Ինչպես տեսնում ենք, Բարդայի գանձը փաստում է հիմնականում սելևկյան արծաթ դրամների թափանցումը Սիրիայից Անդրկովկաս։ Խընըսլուի գանձից բարեբախտաբար պահպանվել են 333 հելլենիստական արծաթյա դրամներ։ Պրոֆեսոր Ե. Ա. Պախոմովի որոշմամբ դրանք հետևյալներն են.*

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| *Հռոմ, հանրապետություն* | | *մ. թ. ա. 82 թիվ* | *դենար* | *1* | *հատ* |
| *Հունաստան, Աթենք* | | » II—I *դարեր,* | *տետրադրախմա* | *5* | » |
| *Թրակիա, Լիսիմաքոս* | | *(323—281)* | » | *3* | » |
| *Բութանիա, Նիկոմեդոս* | II | *(149—91)* | » | *2* | » |
| » *Նիկոմեդոս* | III | *(91—74)* | » | *5* | » |
| *Պոնտոս, Միհրդատ* | VI | *(121—63)* | » | *1* | » |

[1] *ՀՊԹ, № 22280։*

[2] *ՀՊԹ, № № 4795—4809։*

[3] *Пахомов*, II, № 314; Музей Азербайджанской ССР, № 4773—4777.

[4] *Նույնը, IX, № 2080։*

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| Սիրիա, | Անտիոքոս | IV | (175—164) | տետրադրախմա | 2 | հատ |
| » | Դեմետրոս | I | (162—150) | » | 9 | » |
| » | Ալեքսանդր | I | (150—145) | » | 1 | » |
| » | Անտիոքոս | VII | (138—129) | » | 51 | » |
| » | Ալեքսանդր | II | (128—123) | » | 1 | » |
| » | Անտիոքոս | VIII | (121—96) | » | 1 | » |
| » | Սելևկոս | VI | (96—95) | » | 1 | » |
| » | Անտիոքոս | X | (94—83) | » | 1 | » |
| » | Փիլիպոս | I | (92—83) | » | 15 | » |
| Իրան, | Հրահատ | I | (176—171) | » | 1 | » |
| » | Միհրդատ | II | (123—88) | » | 104 | » |
| » | Արտավան | II | (88—77) | » | 5 | » |
| » | Սանատրուկ | | (77—70) | » | 18 | » |
| » | Հրահատ | III | (70—57) | » | 8 | » |
| » | Հրահատ | III | (?) | » | 23 | » |
| » | Անորոշ | | | » | 3 | » |
| Տեղական թողարկման արծաթ դրամներ մ. թ. ա I դար, դրախմա | | | | » | 72 | » |
| | | | | Ընդամենը | 333 | » |

Գանձի ժամանակով ամենահին դրամը թողարկվել է մ. թ. ա. IV դարի վերջին կամ III դարի սկզբին, իսկ ամենանորը՝ մ. թ. ա. 70—57 թվականներին։

Կասպից ծովից ոչ շատ հեռու, Շամախու շրջանում բացված այս գանձը իր պարունակությամբ չնայած որոշ չափով տարբերվում է Սառնակունքի գանձից, սակայն նույնպես արտացոլում է իրանական ու սիրիական դրամների առկայությունը Անդրկովկասում։ Միջերկրականի արևմտյան ափերից, մասնավորապես Հռոմից, ինչպես նաև Հունաստանից և փոքրասիական երկրամասերից եկած դրամական միավորները ներկայացված են աննշան չափով։ Ընդհանրապես մերձկասպյան վայրերում, Քուռի հյուսիսային կողմերում Հռոմի հանրապետության դենարները և Հունաստանի ու Փոքր Ասիայի շրջաններից ծագած տետրադրախմաները հազվադեպ են և եթե անգամ առանձին նմուշներով թափանցել են, ապա տեղական շրջանառության համար բնորոշ չեն։ Խնդրոյու գանձում տեղական շրջանառության համար բացառիկ վկայություն է սելևկյան կամ Ալ. Մակեդոնացու դրամների և հռոմեական դենարների տեղական ընդօրինակությունների (դրախմաներ) գործածությունը։ Վերջիններս տակավին առաջին անգամ են հայտնաբերվում։ Նման կարգի նորահայտ դրախմաների (արծաթի քաշը 1,25—3,22 գրամ) իսպառ բացակայությունը Շամախու սահմաններից դուրս ինքնըստինքյան խոսում է նախ և առաջ այդպիսիների զուտ տեղական նշանակության մասին։ Նրանց դասակարգումը և ժամանակագրումը հատուկ քննության խնդիր է։ Առաջիկայում նոր դրամական գյուտերը կարող են լրացնել և նշանակալից ճշգրտումներ մտցնել մեր պատկերացումների մեջ, սակայն ի մի բերելով Հայկական ՍՍՀ տարածության վրա և հարևան անդրկովկասյան շրջաններում գտնված հելլենիստական դրամների տվյալները, մեր առաջ ուրվագծվում են Սառնակունքում թաղված

*դրամագլխի կուտակման որոշ շրջաններ, կապված մ. թ. ա. I դարի միջազգային ապրանքա-փոխանակության որոշակի երկրների հետ։ Ենթադրաբար կարելի է ասել, որ գանձի տերը, լինի դա վաճառական, ունևոր քաղաքացի, կամ թե պաշտոնյա, նախքան Սյունիք հասնելը, պետք է որ եղած լիներ ապրանքա-դրամական հարաբերությունների այնպիսի միջավայրում, ուր շրջանառության մեջ բացարձակ իշխում էին հռոմեական դրամները։ Այդպիսին կարող էր լինել բուն Հռոմը, կամ միջերկրականի արևմուտքում Հռոմի հետ անմիջականորեն կապված քաղաքներից մեկը։ Այդտեղ էլ նա կարող էր ձեռք բերել սիցիլիական, գալլիական ու իսպանական ծագման հանրապետական այն դենարները, որոնք խիստ հազվադեպ են Արևելքում։ Այս ենթադրությունը ընդունելով որպես հավանականություններից մեկը, բացառված չեն նաև այլ հնարավորություններ։*

*Գանձի կուտակման երկրորդ շրջանը հավանաբար կապվում է փյունիկյան ու սիրիական վաճառաշահ քաղաքների հետ, որոնցից հիշատակված են Տյուրոսը և Անտիոքը։ Սրանց շուկաներում ավելի շատ, քան Մերձավոր Արևելքի մնացած վայրերում, կարելի էր ձեռք բերել սելևկյան ու փյունիկյան տետրադրախմաների այն հոծ քանակությունը, որ հավաքված է Սառնակունքի գանձում։ Հարկ է նկատել, որ հենց այս վայրերում էլ գանձատիրոջ մոտ կարող էին անցնել ինչպես Տիգրան Մեծի անտիոքյան տետրադրախմաները (№ № 121, 122), այնպես էլ հռոմեական այն դրամները, որոնք մ. թ. ա. 30-ական թվականներին թողարկվում էին Անտիոքում (տե՛ս դրամներ № № 365—372)։*

*Գանձի կուտակման վերջին ընթացքը կատարվել է Հայաստանում և ամենայն հավանականությամբ նրա մայրաքաղաք Արտաշատում։ Բացառված չէ այն հնարավորությունը, որ գանձատերը Միջագետքից կամ փյունիկյան ափերից Հայաստան վերադարձած լինի Փոքր Ասիայի վրայով։ Վերջինիս շուկաներից նրա դրամագլխին կարող էին ավելանալ ինչպես պերգամոնյան ու էփեսոսյան կիստոֆորները (տե՛ս № № 140—147, 338—344), այնպես էլ Հունաստանից դուրս եկած հռոմեական դենարները (№ № 354—360)։ Ճանապարհին կարող էր ձեռք բերել նաև կապադովկիական դրախմաներ (№ № 132—139) և Մարկոս Անտոնիոսի ու Օկտավիանոսի պատկերներով մ. թ. ա. 41 թվականին թողարկված փոքրասիական դենարներ (№ № 308—324), որոնք շրջանառության մեջ էին նաև հայկական շուկաներում։ Հայաստանում միջազգային առևտրի ամենախոշոր կենտրոնը Արտաշատն էր, ուր հանգրվան էին գտնում Արևելքից ու Արևմուտքից եկած քարավանները։ Պետք է ենթադրել, որ գանձատերը նախքան Սառնակունք հասնելը մի որոշ ժամանակ ապրել է Արտաշատում, որտեղ, ավելի քան Սյունիքում, կարող էր ձեռք բերել տեղական շրջանառության համար բնորոշ հայկական ու պարթևական դրամներ։ Նկատենք, որ գանձում վերջին հայկական դրամները, ամենայն հավանականությամբ, դրվագված են Հայաստանի մայրաքաղաքում։ Վերջինիս փողերանոցից մ. թ. ա. 32—31 թվականներին դուրս էին եկել նաև Մարկոս Անտոնիոսի ու Կլեոպատրայի պատկերներով և կամ միայն Մ. Անտոնիոսի դիմանկարներով հռոմեական այն դենարները, որոնք թողարկվել էին ի նշան Հայաստանի գրավման (№ № 361—364)։ Ժամանակի առումով դրանք գանձի վերջին դրամներն են։ Շատ հնարավոր է, որ այդ կարգի դրամները գանձատերը կարող էր ստանալ արդեն Հայաստանում եղած ժամանակ։ Մեր այս ենթադրությունները պայմանավորված են մ. թ. ա. I դարի վերջերին Հայաստանի հյուսիս-արևելյան կողմերում ըն-*

թացող դրամական շրջանառությանը բնորոշ ավյալներով։ Սակայն ի՞նչ պայմաններ կային այդ տարիներին Հայաստանում, երբ կատարվեց գանձի թաղումը։ Բազմաթիվ վկայություններից հայտնի է, որ յուրաքանչյուր դրամական գանձ շրջանառության մեջ եղած այնպիսի դրամների ամբողջություն է, որոնք թաղվելու պահին ռեալ նշանակություն են ունեցել իբրև վճարամիջոց, «ապրանքների ապրանք»։ Հողի մեջ դրամական գանձը պահելու ձևը անցյալներում եղել է ամենից ընդունվածը, փաստված կամ հավաստված դրամագյուտերի բազմաթիվ օրինակներով։ Գանձատերը իր հարստությունը թաղել է հողում, այն ապահով պահելու համար, որպեսզի որոշ ժամանակ անց նորից օգտագործի։ Սակայն այդ տեղի չի ունեցել։ Դրամների այն քանակությունը, որ մեզ է հասել (373 արծաթ միավորներ 1758,89 գրամ քաշով), ներկայացնում է իր ժամանակի համար խոշոր գումար։

Սովորաբար գանձերը պահվում են երկրում իշխող տագնապալից պահերին, երբ սպառնալիքի տակ է դրված լինում մարդկանց ունեցվածքը։ Անապահովության և երկյուղի վիճակը իշխում է մանավանդ այն երկրներում, որոնք պատերազմական գործողությունների բերումով ընկնում են օտարների իշխանության տակ, ենթարկվելով վերջիններիս հարստահարմանն ու կողոպուտին։ Սյունյաց գավառի Սառնակունք գյուղի մոտ բացված այդ գանձի հողի մեջ թաղվելու հանգամանքը թերևս կապված լինի Հայաստանի մ. թ. ա. I դարի վերջերին ապրած ծանր ու երկյուղալից ընդհանուր վիճակի հետ։ Հայտնի է, որ մ. թ. ա. 34 թվականի գարնանը հռոմեական զորքերը Մարկոս Անտոնիոսի գլխավորությամբ հանկարծակի հարձակվում են Հայաստանի վրա և գրավում հայոց մայրաքաղաքը՝ Արտաշատը։ Հռոմեական զինված ուժերը ձերբակալում են հայերի թագավոր Արտավազդ II Արտաշեսյանին և ընտանիքով աքսորում Եգիպտոս։ Հռոմեական զավթիչները թալանում էին Հայաստանի հեթանոսական տաճարները, գյուղերն ու քաղաքները։ Ինքը՝ Մարկոս Անտոնիոսը շրջում էր հայկական ամրոցները՝ գանձեր հավաքելու նպատակով։ Լինելով Եկեղյաց գավառում նա կողոպտում է Անահիտ աստվածուհու ոսկեձույլ արձանը։ Մեկ տարի անց, մ. թ. ա. 33 թ. Մարկոս Անտոնիոսը պարթևական Իրանի դեմ ռազմական նոր նախապատրաստությունների համար նորից է մտնում Հայաստան։ Հայաստանը դարձյալ ենթարկվում է հարստահարումների ու կողոպուտի։

Մ. թ. ա. 31 թվականին Ալեքսանդրիայում Մ. Անտոնիոսի և Կլեոպատրայի հրամանով գլխատում են Արտավազդ II-ին և Հայոց արքայի գլուխը իբրև ընծա ուղարկում նրա ոխերիմ թշնամուն՝ Հռոմի շահերին ծառայող Ատրպատականի թագավոր Արտավազդ Մեդացուն[1]։ Ահա այս՝ 32—31 թվականներին էլ թողարկվել են Մարկոս Անտոնիոսի և Կլեոպատրայի պատկերներով արծաթ դրամները, նվիրված Հայաստանի նվաճմանը (№ № 362—364)։ Ուշագրավ է, որ այդ դրամների վրա Հայոց Արտաշեսյան թագը պատկերված է թափուր տեսքով, բատ որում Մ. Անտոնիոսի գլխավերևում, թերևս ցույց տալու համար, որ այն վերապահված է արդեն նրա հետնորդներին։ Հայտնի է այն իրողությունը, որ Մարկոս Անտոնիոսից և Կլեոպատրայից ծնված վեց տարեկան Ալեքսանդրին 34—31 թվականներին բաժին էր հանվել նվաճված Մեծ Հայքի թագավորությունը[2]։ Ինչպես նշվեց, Սառնակունքի գանձից մեզ հասած դրամ-

[1] Հ. Հ. Մանանդյան. *Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատոր Ա, Երևան, 1944, էջ 279։*

[2] *Նույնը, էջ 259—276։*

ների մեջ ժամանակով ամենանոր դրամները 32—31 թվականների դենարներն են, որոնք դրվագվել են, ամենայն հավանականությամբ, Հայաստանում՝ մայրաքաղաքի փողերանոցում։ Այդ տարիներին հայկական ուժերը համախմբվել էին Արտավազդ II-ի որդի Արտաշես II-ի (30—20) շուրջ և մաքառում էին հռոմեական զավթիչների դեմ։ Գրավոր աղբյուրների քննությունը ցույց է տվել, որ Հայաստանը ընդհանուր կողոպուտի է ենթարկվել հռոմեական լեգեոնների կողմից։ Հավանաբար, այսպիսի իրադրության մեջ է Սառնակունքի գանձը հանձնվել հողին։ Թաղումը կատարվել է ոչ թե մ. թ. ա. 31 թ., այլ մ. թ. ա. 20-ական թվականների սկզբին։ Մեր այս ենթադրությունը պայմանավորված է նախ և առաջ գանձում եղած 30-ական թթ. վերաբերող դրամների պահպանվածության վիճակով, որոնք բոլորովին մաշված չեն՝ շրջանառության մեջ երկար չլինելու հետևանքով։

Եվ որ առավել կարևոր է, գանձում իսպառ բացակայում են ավելի ուշ տարիների դրամներ, մասնավորապես Հռոմեական կայսրության անդրանիկ դենարներից, որոնց զանգվածային թողարկումն սկսվել էր Օկտավիանոսի միանձնյա իշխանության հաստատումից հետո՝ հռչակված մ. թ. ա. 27 թ. հունվար ամսին։ Օկտավիանոսի օգոստոս (AVGVSTVS) «Սրբազան» պատվատիտղոսով վաղագույն դենարները վերաբերում են մ. թ. ա. 19 թ.[1]։ Այդպիսիները գանձում չկան։

---

[1] *H. Mattingly, M. A.*, Coins of the Roman Empire, in the British Museum, vol. I, ci, pl. I

## ՀԵԼԼԵՆԻՍՏԱԿԱՆ ԴՐԱՄՆԵՐ

### *Ա ր ծ ա թ*

### *ՄԱԿԵԴՈՆԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ*

1. Ալեքսանդր մեծ *(336—323), տետրադրախմա։*
*Ա կողմ. Հերակլեսի գլուխը՝ դեպի աջ, երիզափակ շրջագիծը խիստ մաշված։ Բ կողմ. Զևսը բազմած գահին, դեպի ձախ։ Խորագիրը և պատկերի մանրամասնությունները չեն պահպանվել։ Տ. 24 մմ, ք. 16,77 գր., կ., ՀՊԹ, № 17824/₁։* Зограф, XI № 13; Müller, I № 13.

2. Նույնը, *դրախմա։*
*Ա կողմ. Հերակլեսի գլուխը դեպի աջ, երիզափակ շրջագիծը կետավոր։ Բ կողմ. Զևսը բազմած գահին, դեպի ձախ, աջ ձեռքին՝ արծիվ։ Խորագիրը և այլ մանրամասնությունները չեն պահպանվել։ Երիզափակ շրջագիծը կետավոր է։ Դրամը կոտրված է և միացված երեք տեղով։ Տ. 17 մմ, ք. 3,80 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/₂։* Зограф, *պատկերատախտակ* XI, *№ 7։*

### *ՍԵԼԵՎԿՅԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ*

### *Ա ր ծ ա թ*

3. Ալեքսանդր I Բալա *(Սելևկյան 162—167 թվեր =մ. թ. ա. 150—145 թթ.) տետրադրախմա, 146 թ. մ.թ.ա։*
*Ա կողմ. Ալեքսանդրի դանդրահեր գլուխը՝ զարդարված արքայական վարսակալով, դեմքը դեպի աջ, երկարավուն ուլունքներից երիզափակ շրջանակի մեջ։ Բ կողմ. Զևսը բազմած գահին, հենվածքով դեպի ձախ, ծնկներին քղամիդ, ձախ ձեռքում գավազան, աջին՝ հաղթանակի արձանիկը, պսակ է մեկնում Զևսին, որի ոտքերի առաջ՝* OM։ *Մենագիրը՝* Δ *(տե՛ս մենագիր № 1), տարեթիվը* CΞP, *դրանից մի փոքր աջ պահպանվել են* AI(°) *գրերը։ Խորագիրը՝ աջից.* ΒΑΣΙΛΕΩΣ ‖ ΑΛΕΞΑΝΔΡ[ΟΥ], *ձախից՝* ΘΕΟΠΑΤΟΡΟΣ ‖ ΕΥΕΡΓΕΤΟ[Υ]*։ Այս ամենը վերցված է շրջագծի մեջ։ Տ. 29 մմ, ք. 16, 70 գր., կ. ↑, ՀՊԹ, № 15137։* BN, *112, № 881,* pl. XVIII, № 6; *տարբերակը տե՛ս* Gardner, 51, № 7, pl. XV, № 6։

4. Դեմետրիոս II Նիկատոր, *թագավորության առաջին շրջան (166—175= 146—138), տետրադրախմա, մ. թ. ա. 144 թվական։ Ա կողմ. Դեմետ-*

րոսի գլուխը, վարսակալով, դեպի աջ, երկարավուն ուլունքների շրջանակի մեջ: Բ կողմ. Ապոլլոնը նստած դեպի ձախ, աջ ձեռքում նետ, մյուս ձեռքը հենած աղեղին: Խորագիրը աջից՝ ΒΑΣΙΛΕΩΣ || ΔΗΜΗΤ-ΡΙΟΥ ձախից՝ ΘΕΟΥ || ΦΙΛΑΔΕΛΦΟΥ || ΝΙΚΑΤΟΡΟΣ, ներքևում տարեթիվը՝ ΗΞΡ: Դրամի եզերքին և առաջին կողմի կենտրոնական մասում նկատվում է կտրվածք, հավանաբար մուրճի հարվածից: Տ. 28 մմ, ք. 16,80 գր. կ. ↑, ՀՊԹ, № 16098: BN, 950, pl. XIX, № 16; տարբերակը տե՛ս Gardner, 58, № 8, I. XVII, № 8:

5. Դեմետրոս II Նիկատոր, *թագավորության երկրորդ շրջան (182—187 = 130—125), տետրադրախմա, մ. թ. ա. մոտ. 128 թ., Տյուրոս: Ա կողմ. կետավոր շրջանակի մեջ Դեմետրոսի կիսադեմ գլուխը արքայական վարսակալով՝ դեպի աջ: Բ կողմ. արծիվը կանգնած նավի ղեկին, դեպի ձախ, արմավենու ճյուղն աջ թևին, առջևում գավազան ⚕ նշանով (տե՛ս մենագիր № 2) և ΟΕ գրերով (մենագիր № 5), տարեթիվը՝* ΔΗΡ = *184 (ըստ սելևկյան տոմարի) և մենագիր՝ ΑΣ (№ 3), ներքևում՝ ΙΡ (մենագիր № 4): Խորագիրը՝* [ΔΗΜΗΤΡΙΟΥ]: *Այս ամենը վերցված է կետավոր շրջանակի մեջ: Տ. 26,50 մմ, ք. 14,00 գ., կ. ↑, ՀՊԹ, № 15127:* BN, 153, № 1177; Gardner, 76, № 4, pl. XXI, № 1:

5ա. Նույնը, *ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով, տարեթիվը* ΒΠΡ = *սելևկյան 182 թ. = մ. թ. ա. մոտ 130 թ.: Արծվի ոտքերի միջև* ZB, *խորագրերից դրոշմվել է միայն* ΒΑΣΙΛΕΩΣ *բառը: Տ. 27 մմ., ք. 13,52 գ., կ. ↑, ՀՊԹ, № 17986:* BN 153, № 1177, pl. XXII, № 7; Gardner, 76, № 3, pl. XXI, № 1:

6. Նույնը, *տետրադրախմա նույն տարեթվով: Մանրամասնությունները ինչպես նախորդում, սակայն դրվագված տարբեր կնիքներով: Տ. 27 մմ, ք. 13,95 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/3:* Gardner, 76 № 4:

7. Նույնը, *տետրադրախմա նույն տեսակի, բայց տարեթիվը՝* ΕΠΡ (= *սելևկյան 185 = մ. թ. ա. 127), արծվի ոտքերի միջև* M *գիրը: Տ. 28 մմ, ք. 14,84 գ., կ. ↑, ՀՊԹ, № 17824/4:* BN 155, № 1199; Gardner, 76, № 6, pl. XXI, № 1.

8. Նույնը, *ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Խորագրի առաջին բառը* [ΔΗΜΗΤΡΙΟΥ] *խիստ մաշված է: Տ. 29 մմ, ք. 13,46 գր., կ. ↑, ՀՊԹ, № 18215/1:* Gardner, 76, № 6, pl. XXI, № 1.

9. Նույնը, *ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Խորագիրը պահպանվել է լրիվ՝* ΒΑΣΙΛΕΩΣ ΔΗΜΗΤΡΙΟΥ. *Տ. 28 մմ, ք. 14,18 գր., կ. ↑, ՀՊԹ, № 18215/2:* Gardner, 76, № 6, pl. XXI, № 1.

10. Նույնը, *բայց տարեթիվը* CΠΡ *(սելևկյան 186 = մ. թ. ա. 126): Արծվի առջևում նշված* PE *տառերը շրջված են ներքև: Մանրամասնությունները ինչպես նախորդում, թեև տարբեր կնիքներով դրվագված: Տ. 30 մմ, ք. 14,00 գր., կ. ↑, ՀՊԹ, № 16097, տարբերակը տե՛ս* Gardner, 76, № 9:

11. Նույնը, *ինչպես նախորդը, բայց ջնջված տարեթվով և տարբեր կնիքներով դրվագված: Տ. 30 մմ, ք. 14,00 գր., կ. , ՀՊԹ, № 16107:* Gardner, 76, № 1, *տարբերակը տե՛ս* BN, 153, № 1177.

12. Անտիոքոս VII Էվերգետես *(174—183=138—129) տետրադրախմա, 135 թ. մ. թ. ա., Տյուրոս: Ա կողմ. կետավոր երիզափակ շրջանակի մեջ Անտիոքոսի գլուխը վարսակալով դեպի աջ: Բ կողմ. արծիվը կանգնած նավի ղեկին, աջ թևին արմավենու ճյուղ, առջևում գավազան, վրան մենագիր (№ 2) և դրերը (մենագիր № 5): Արծվի թիկունքում նշանը (մենագիր № 3) և տարեթիվը՝* ΙΟΡ = *177 (սելևկյան), իսկ ոտքերի միջև՝* F: *Խորագիրը աջից՝* ΒΑΣΙΛΕΩΣ. *ձախից՝* ΑΝΤΙΟΧΟΥ: *Այդ բոլորը խոշոր կետերից բաղկացած երիզափակ շրջանակի մեջ: Տ. 26 մմ, ք. 14 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/5:* BN, 142 № 1099; Gardner, 70, № 7.

13. Նույնը, *տետրադրախմա, բայց տարեթիվը* ΒΠΡ *(սելևկյան 182)=մ. թ. ա. 130: Արծվի ոտքերի միջև նշան՝ (տե՛ս մենագիր № 4): Մանրամասնությունները ինչպես նախորդում, թեև դրվագված տարբեր կնիքներով: Տ. 27,5 մմ, ք. 13,90 գր., կ. ↑, ՀՊԹ, № 15077:* BN, 141, № 1126, pl. XXI, № 2; Gardner, 70, № 11, pl. XX, № 5.

14. Նույնը, *բայց տարեթիվը, ինչպես նաև խորագրերի և փակագրերի մանրամասնությունները չեն պահպանվել: Տետրադրախման կիսով չափ եզրերից կտրված է: Տ. 30 մմ, ք. 13,10 գր., կ. ↑, ՀՊԹ, № 16105:* BN, 141, № 1088, pl. XXI, № 12 *(տարբերակ):*

15. Նույնը, *բայց այլ պատկերատիպի անտարեթիվ տետրադրախմա:*
*Ա կողմ. Անտիոքոս* VII *Էվերգետեսի գլուխը վարսակալով, կիսադեմ, դեպի աջ: Երիզափակ շրջանակը բաղկացած է երկարավուն ուլունքներից, որոնք հաջորդաբար ընդհատված են զույգ կետերով: Բ կողմ. կենտրոնում Աթենասը կանգնած դեպի ձախ: Աջում՝ հաղթանակի արձանիկը, ձախում՝ նիզակ ու վահան, ծնկների մոտ* Τ *և* Α, *խորագիրը թիկունքում՝* ΒΑΣΙΛΕΩΣ ΑΝΤΙΟΧΟΥ. *առջևում* ΕΥΕΡΓΕΤΟΥ. *ձախից նշան (մենագիր № 9): Այդ ամենը վերցված է պսակաձև շրջանակի մեջ: Տ. 28 մմ, ք. 16,40 գր., կ. , ՀՊԹ, № 16103: Տեսակը ինչպես* BN, 149, № 1153, pl. XXI, № 14; Gardner, 71, № 25, pl. XX, № 6.

16. Նույնը, *ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Տ. 28 մմ, ք. 16,30 գր., կ. ↑, ՀՊԹ, № 15125:*

17. Նույնը, *ինչպես նախորդը. բայց դրվագված տարբեր կնիքներով: Տ. 28 մմ, ք. 16,10 գր., կ. , ՀՊԹ, № 17824/6:*

18. Նույնը, *ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Մենագիրը՝* ΔΑ *(տե՛ս ձև № 10): Տ. 28 մմ, ք. 15,13 գր., կ. , ՀՊԹ, № 17824/7:*



5—758

19. Նույնը, ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Մենագիրը [monogram] (տե՛ս ձև № 15): Տ. 27 մմ; ք. 16,30 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/8:

20. Նույնը, ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Մենագրերը՝ [monogram] և T—Λ (տե՛ս ձև 12): Տ. 27 մմ, ք. 16,00 գր., կ. ↑, ՀՊԹ, № 15124:

21. Նույնը, ինչպես նախորդը, բայց կնիքները տարբեր են: Մենագիրը՝ [monogram] (տե՛ս ձև № 10): Խորագրի առաջին բառը ΙΝΞ[ΩΞ, փոխանակ ΒΑΣΙΛΕΩΣ-ի: Տ. 28 մմ, ք. 13,00 գր., կ. ↑, ՀՊԹ, № 15126: Կոպիտ ընդօրինակության նմուշ է:

22. Նույնը, ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Մենագրերը՝ [monogram] (տե՛ս ձև № 13): Տ. 26 մմ, ք. 15,88 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/9:

23. Նույնը, ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Մենագիրը՝ [monogram] (տե՛ս ձև № 9): Աթենասի ձախ ձեռքի մոտ M, իսկ աջևում ոչ մի նշան: Մանրամասնությունները ինչպես նախորդում: Տ. 27 մմ, ք. 16,35 գր., կ. ↗, ՀՊԹ, № 16102: BN. 150, № 1157, pl. XXI, № 14; Gardner, 71, № 22, pl. XX, № 6:

24. Նույնը, բայց մենագիրը՝ [monogram] (տե՛ս ձև № 13) և Աթենասի կողքերին ձախից՝ TI, աջից՝ IΛ: Տ. 25 մմ, ք. 15,10 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/10:

25. Նույնը, բայց այն տարբերությամբ, որ մենագիրը՝ [monogram] (տե՛ս ձև № 10) Աթենասի կողքերին առանձին գրեր չեն նշված: Անտիոքոս VII-ի բարձրաքանդակ պատկերը այլ կնիքով է դրվագված: Տ. 27 մմ, ք. 16,60 գր., կ. ↑, ՀՊԹ, № 16104:

26. Նույնը, ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Մենագիրը՝ [monogram] (տե՛ս ձև № 10): Ա. կողմ. շրջագիծ չկա: Տ. 28 մմ, ք. 16,62 գր., կ. ↑, եզրում մի տեղ կտրված, ՀՊԹ, № 17824/11:

27. Նույնը, բայց այն տարբերությամբ, որ Անտիոքոսի պատկերը վերցված է երկարավուն ուլունքներից հյուսված շրջանակի մեջ: Մենագիրը՝ [monogram] (տե՛ս ձև № 9): Տ. 28 մմ, ք. 15,85 գր., կ. ↑, եզրերին մի տեղ քերծված, ՀՊԹ, № 17824/12:

28. Նույնը, ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Աթենասի ձախ կողմում՝ Γ, իսկ աջից առանձին գիր չի նշված: Մենագիրը՝ [monogram] (տե՛ս ձև № 15): Տ. 27 մմ, ք. 16,10 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/13:

29. Փիլիպոս I Ֆիլադելփոս (220—229 = 92—83), անտարեթիվ տետրադրախմա:

*Ա. կողմ. Փիլիպոսի կիսադեմ գլուխը արքայական վարսակալով դեպի աջ, ամփոփված երկարավուն ուլունքներից հյուսված շրջանակի մեջ, բոլոր ուլունքներից յուրաքանչյուրն իր երկու ծայրերում ունի մեկական փոքրիկ գնդաձև հատիկ: Բ կողմ. կենտրոնում պատկերված է Զևսը, բազմած գահին, ուղղությունը դեպի ձախ: Աջ ձեռքին հաղթանակը՝ պսակով, ձախում՝ երկար գավազան: Գահի տակ մենագիր՝* ⩚ *(տե՛ս ձև № 16): Մակագիրը աջից՝* ΒΑΣΙΛΕΩΣ ‖ ΦΙΛΙΠΠ[ΟΥ], *ձախից՝* ΕΠΙΦΑΝΟΥ ‖ ΦΙΛΑΔΕ[ΛΦΟΥ]: *Այդ ամենը երիզափակ պսակի մեջ: Տ. 27 մմ, ք. 15,10 գր., կ. ↑, ՀՊԹ, № 15135: Համեմատություն.* BN, 203, № 1546, pl. XXVII, № 14; Gardner, 100, № 2, pl. XXVI, № 9.

*30.* Նույնը, *ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Տ. 26 մմ, ք. 15,20 գր., կ. ↑, ՀՊԹ, № 15079:*

*31.* Նույնը, *ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Տ. 25 մմ, ք. 15,43 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824 14:*

*32.* Նույնը, *ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Ներքևում* Τ *(°): Տ. 24 մմ, ք. 15,02 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/15:*

*33.* Նույնը, *ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Ներքևում՝* Η *(°): Տ. 26 մմ, ք. 15,20 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/16:*

*34.* Նույնը, *ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Տ. 26 մմ, ք. 15,96 գր. կ. ↑, ՀՊԹ, № 17824/17:*

*35.* Նույնը, *բայց այն տարբերությամբ, որ Զևսի ոտքերի տակ, գծից ներքև նշված է* Η *տառը: Տ. 25 մմ, ք. 15,15 գր., կ. ↑, ՀՊԹ, № 16101: Համեմատություն.* BN, 205, № 1558; Gardner, 100, № 16, pl. XXVI № 9.

*36.* Նույնը, *ինչպես նախորդը, Զևսի ոտքերի տակ, հորիզոնական գծից ներքև նշված է* Η *գիրը: Մնացած մանրամասնություններով նման է Փիլիպոս* I *Ֆիլադելփոսի վերոհիշյալ տետրադրախմաներին: Տ. 26 մմ, ք. 14,80 գր., կ. →, ՀՊԹ. № 15129:*

*37.* Նույնը, *ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Զևսի ոտքերի տակ, գծից ներքև նշված է* Π *տառը: Տ. 27 մմ, ք. 14,75 գր., կ. ↑, ՀՊԹ, № 15136:*

*38.* Նույնը, *ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով: Զևսի ոտքերի տակ նույն* Π *տառը: Տ. 29 մմ, ք. 15,10 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/18:*

*39.* Նույնը, *բայց այն տարբերությամբ, որ Զևսի ոտքերի առաջ նշված է* Ι

գիրը, իսկ ներքևում երևում է Θ գրի վերին մասը։ Մենագիրը՝ ⩚ (տե՛ս ձև № 16)։ Տ. 26 մմ, ք. 15,15 գր., կ. ↗, ՀՊԹ, № 15132։

40. Նույնը, ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով։ Ձիու ոտքերի առաջ I գիրը, ներքևում, գրեթե ամբողջովին պահպանված է Θ տառը։ Մենագիրը՝ ⩚ (տե՛ս ձև № 16)։ Տ. 26 մմ, ք. 14,65 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/19։ Gardner, 100, № 14.

41. Նույնը ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով։ Ձիու ոտքերի տակ, գծից ներքև H (°)։ Տ. 27 մմ, ք. 14.77 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/20։

42. Նույնը, ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով։ Ձիու ծնկների առաջ N տառը։ Մենագիրը ⩚ (տե՛ս ձև № 16), ներքևում ոչինչ չի պահպանվել։ Մանրամասնությունները ինչպես նախորդում։ Տ. 27 մմ, ք. 14,50 գր., կ. ↑, ՀՊԹ, № 15078։ Համեմատություն. BN. 205, № 1557; Gardner, 100, № 10, pl. XXVI, № 9.

43. Նույնը, ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով։ Ձիու ծնկների առաջ՝ N, բայց գահի տակ մենագիրը քերծված է և հստակ չի որոշվում նրա ձևը։ Ընդհանուր տեսքով այն նմանվում է նախորդ տետրադրախմայի նշանին (տե՛ս ձև № 16)։ Ձիու ոտքերի տակ, գծից ներքև ոչինչ չի պահպանվել։ Տ. 25 մմ, ք. 15,20 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/21։

44. Նույնը, ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով։ Ձիու ծնկների առաջ՝ Φ։ Մենագիրը՝ ⩚ (տե՛ս ձև № 16), ներքևում՝ T։ Մանրամասնությունները ինչպես Փիլիպոս I Ֆիլադելփոսի վերոհիշյալ տետրադրախմաների վրա։ Տ. 26 մմ, ք. 15,0 գր., կ. ↗, ՀՊԹ, № 16099։ Համեմատություն. BN, 205, № 1559։ Տարբերակը տե՛ս Gardner, 100, № 11, pl. XXVI, № 9.

45. Նույնը, ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով։ Ձիու ծնկների առաջ՝ Φ տառը, գահույքի տակ՝ ⩚ (տե՛ս ձև № 16), ներքևում՝ T (°)։ Տ. 27 մմ, ք. 14,95 գր., կ. ↑, ՀՊԹ, № 18215/3։

46. Նույնը, ինչպես նախորդը, բայց ներքևում Λ և Γ միահյուսված (տե՛ս ձև № 17)։ Տ. 26 մմ, ք. 14,80 գր., կ. ↑, ՀՊԹ, № 16100։

47. Նույնը, ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով։ Տ. 26 մմ, ք. 14,80 գր., կ. ↗, ՀՊԹ, № 15081։

48. Նույնը, բայց այն տարբերությամբ, որ Ձիու ոտքերի տակ, գծից ներքև մենագիրը այլ ձև ունի՝ AT (տե՛ս ձև № 19)։ Տ. 25 մմ, ք. 15,35 գր., կ. ↑, ՀՊԹ, №17824/22։

49. Նույնը, բայց Ձիու ծնկների առաջ նշան չկա, իսկ ներքևում՝ Ξ տառը։

Մանրամասնությունները ինչպես նախորդում։ Տ. 27 մմ, ք. 14,65 գր., կ. ↑, ՀՊԹ, № 15080։ Համեմատություն. BN, 204, № 1548; Gardner, 100, № 4.

50. Նույնը, ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով։ Ձախ ոտքերի տակ՝ T։ Տ. 22 մմ, ք. 14,85 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/23։

51. Նույնը, ինչպես նախորդը, բայց Ձախ ոտքերի տակ, գծից ներքև՝ Λ տառը։ Տ. 27 մմ, ք. 14,90 գր., կ. ↑, ՀՊԹ, № 15130։

52. Նույնը, ինչպես նախորդը, բայց Ձախ ոտքերի տակ, աջից գծից ներքև՝ T։ Մենագիրը՝ կետավոր (տե՛ս ձև № 16)։ Տ. 25 մմ, ք. 14,75 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/24։

53. Նույնը, բայց Ձախ ձիերի առջև Θ տառը, բազկաթոռի տակ նույն ⩚ մենագիրը (տե՛ս ձև № 16)։ Տ. 25 մմ, ք. 15,15 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/25։

54. Նույնը, բայց Ձախ ձիերի առջև փակագիր ✡ (տե՛ս ձև № 20), ներքևում Δ տառը, բազկաթոռի տակ ⩚ (տե՛ս ձև № 16)։ Շրջանակները չեն պահպանվել։ Տ. 26 մմ, ք. 15,05 գր., կ. ↗, ՀՊԹ, № 15134։ Համեմատություն. BN, 204, № 1551; Gardner, 100, № 7.

55. Նույնը, բայց Ձախ ձիերի առջև A տառը, դահի տակ մենագիր՝ ⩚ (տե՛ս ձև № 16), իսկ արծվի ոտքերի տակ, գծից ներքև ոչինչ չի պահպանվել։ Մանրամասնությունները ինչպես նախորդում։ Տ. 25 մմ, ք. 14,90 գր., կ. ↑, ՀՊԹ, № 15133։

56. Նույնը, բայց Ձախ կրծքի մոտ փակագրեր՝ ⩚ և ⚲ (տե՛ս ձև №№ 21, 22)։ Գահի տակ շանթ։ Բ կողմում երիզափակ շրջանակը ոչ թե պատկած է, այլ երկարավուն ուռնքներից հյուսած, ինչպես Ա կողմի վրա։ Մանրամասնությունները ինչպես նախորդում։ Տ. 27 մմ, ք. 14,45 գր. կ. ↑, ՀՊԹ, № 15082։

57. Նույնը, ինչպես նախորդը, նույն փակագրերով և ձևափոխումներով, բայց դրվագված տարբեր կնիքներով։ Տ. 28,5 մմ, ք. 13,90 գր., կ. →, ՀՊԹ, № 15131։ BN, 203, 204, pl. XXVII, №№ 11, 14, 16.

58. Նույնը, ինչպես նախորդը, բայց դրվագված տարբեր կնիքներով։ Տ. 29 մմ, ք. 13,73 գր., կ. ↑, ՀՊԹ, № 18215/4.

59. Նույնը, սակայն Ձախ առջև նշաններ չկան, գահի տակ մենագիր (տե՛ս ձև № 16), արծվի ոտքերի տակ, գծից ներքև՝ T (")։ Երկու կողմերի վրա էլ շրջանակները չեն պահպանվել։ Տ. 23 մմ, ք. 14,35 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/26։

## Ա ր ծ ա թ

60. Տյուրոս, *տետրադրախմա, մ. թ. ա. մոտ 93 թ.:*
*Ա կողմ. Հերակլեսի գլուխը դափնեպսակով դեպի աջ, ուսին առյուծի մորթի, երիզավոր շրջանակը կետերով: Բ կողմ. արծիվը կանգնած, արմավենու ճյուղը աջ թևին: Առջևում Գայիսոն, որից վերև տարեթիվը՝* ΓΛ=*33, թիկունքին մենագիր՝* ⊞ *(տե՛ս ձև № 23), արծվի ոտքերի միջև՝* Λ *(տե՛ս ձև № 24): Խորագիրը աջից՝* ΤΥΡΟΥΙΕΡΑΣ, *ձախից՝* [ΚΑΙΑΣ Υ]ΛΟΥ: *Այդ ամենը կետավոր շրջագծի մեջ: Տ. 30 մմ, ք. 14,00 գր., կ.* ↑ *, ՀՊԹ, № 15154:* Head, 800, f. 353.

61. Նույնը, *բայց* ΖΛ *(=37) տարեթվով=մ. թ. ա. 89 թ.: Արծվի թիկունքին՝* ◬ *և ոտքերի միջև՝* ϑ *(տե՛ս ձև № 25, 26): Խորագիրը՝* ΤΥΡΟΥΙΕΡΑΣ ΚΑΙΑΣΥΛΟΥ: *Երիզավոր շրջանակները բաղկացած են կետերից: Մանրամասնությունները ինչպես նախորդում, բայց գրվագված այլ կնիքներով: Տ. 28 մմ, ք. 14,40 գր., կ.* ↑ *, ՀՊԹ, № 17824/27:*

62. Նույնը, *բայց* ΗΝ *(=58) տարեթվով=մ. թ. ա. մոտ 68 թ.: Մենագրերը՝* ж *և* ϑ *(տե՛ս № 26, № 27): Ա կողմի վրա շրջանակը չի պահպանվել, Հերակլեսի դեմքը ավելի խոշոր է: Տ. 29 մմ, ք. 14,13 գր., կ.* ↑ *, ՀՊԹ, № 17824/28:*

63. Նույնը, *բայց թողարկված* ΛΝ *(=50) թվականին=մոտ 76 թ. մ. թ. ա.: Մենագիրը՝* △ *(տե՛ս ձև № 28), արծվի ոտքերի միջև՝* ϑ *(տե՛ս ձև № 26): Երկու կողմերի վրա էլ շրջանակները կետավոր են: Մանրամասնությունները ինչպես նախորդում, թեև գրվագված տարբեր կնիքներով: Տ. 30 մմ, ք. 14,10 գր., կ.* ↑ *, ՀՊԹ, № 15157:*

64. Նույնը, *բայց տարեթիվը՝* Ο *(=70)=մոտ 56 մ. թ. ա.: Փակագիրը՝* ☧ *(տե՛ս ձև № 29): Ա կողմի կնիքը ևս տարբերվում է նախորդից: Տ. 28 մմ, ք. 14,30 գր., կ.* ↑ *, ՀՊԹ, № 15150:*

65. Նույնը, *բայց տարեթիվը՝* ΛΟ=*71: Տյուրոսի քաղաքային տոմարով — մոտ 55 թ. մ. թ. ա.: Մենագիրը՝* ⊻ *(տե՛ս ձև № 30), արծվի ոտքերի միջև նշանը չի պահպանվել: Մանրամասնությունները ինչպես նախորդում, թեև գրվագված այլ կնիքներով: Տ. 30 մմ, ք. 14,20 գր., կ.* ↑ *, ՀՊԹ, № 16091:*

66. Նույնը, *բայց տարեթիվը՝* ΟΕ=*75=մոտ 51 թ. մ. թ. ա.: Մենագիրը՝* ♀ *(տե՛ս ձև № 31), արծվի ոտքերի միջև նշան՝* ϟ *(տե՛ս ձև № 32): Մանրամասնությունները ինչպես նախորդում, թեև գրվագված տարբեր կնիքներով: Տ. 27 մմ, ք. 14,20 գր., կ. →, ՀՊԹ, № 15145:*

67. Նույնը, *բայց տարեթիվը՝* ΟΗ=*78, Տյուրոսի տոմարով=մոտ 48 թ. մ. թ.*

*ա.: Մենագիրը՝ ⚹ (տե՛ս ձև № 33), արծվի ոտքերի միջև նշան չկա: Մանրամասնությունները ինչպես նախորդում, թեև Ա կողմի կնիքը նույնպես տարբեր է: Տ. 28 մմ, ք. 13,90 գր., կ. ↑, ՀՊԹ, № 16090:*

68. Նույնը, *ինչպես նախորդը, նույն* ΟΗ *(=78= մ. թ. ա. մոտ 48) տարեթվով և նույն մենագրով՝ ⚹ (տե՛ս ձև № 33): Մանրամասնությունները ինչպես նախորդում, բայց դրվագված այլ կնիքներով: Տ. 28 մմ, ք. 14,30 գր., կ. ↑, ՀՊԹ, № 15146:*

69. Նույնը, *բայց տարեթիվը* Π *(=80= մոտ 46 թ. մ. թ. ա.): Մենագիրը՝* Δ *(տե՛ս ձև № 35): Խորագիրը աջ կողմում համարյա ջնջված է, արծվի ոտքերի միջև ɔ (տե՛ս ձև № 26): Պատկերը Ա կողմում դրվագված է այլ կնիքով: Տ. 28 մմ, ք. 14,20 գր., կ. ↑, ՀՊԹ, № 15155:*

70. Նույնը, *նույն տարեթվով՝* Π *(=80= մոտ 46 թ. մ. թ. ա.), բայց փակագիրը՝* BN *(տե՛ս ձև № 36), արծվի ոտքերի միջև նշան չկա, ինչպես նաև Ա կողմում շրջագիծը չի պահպանվել: Մանրամասնությունները ինչպես նախորդում, բայց դրվագված տարբեր կնիքներով: Տ. 27 մմ, ք. 13,90 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/29:*

71. Նույնը, *բայց տարեթիվը՝* ΠΑ*=81= մոտ 45 թ. մ. թ. ա.: Մենագիրը՝* Δ *(տե՛ս ձև № 35), արծվի ոտքերի միջև անորոշ նշան՝* ⩚ *(տե՛ս ձև № 37): Մանրամասնությունները ինչպես նախորդում: Ա կողմը դրվագված այլ կնիքով: Տ. 27 մմ, ք. 14,20 գր., կ. ↑, ՀՊԹ, № 16092:*

72. Նույնը, *տարեթիվը նույնպես* ΠΑ*: Մենագիրը՝* BN *(տե՛ս ձև № 38): Արծվի ոտքերի միջև նշան չկա: Խորագիրը, ինչպես նաև Հերակլեսի կիսադեմ պատկերը նույնն է, ինչպես նախորդ օրինակում, թեև Ա կողմում շրջագիծը չի պահպանվել: Դրվագված է այլ կնիքով: Տ. 29 մմ, ք. 14,20 գր., կ. ↑, ՀՊԹ, № 15151:*

73. Նույնը, *տարեթիվը՝* ΠΑ*=81 մոտ 45 թ. մ. թ. ա., բայց մենագիրը այլ է՝ ⚲ (տե՛ս ձև № 39), արծվի ոտքերի միջև նշան չկան: Մանրամասնությունները Ա կողմի վրա, ինչպես նախորդում են, սակայն դրվագծված ուրիշ կնիքով: Տ. 27 մմ, ք. 14,22 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/30:*

74. Նույնը, *բայց տարեթիվը՝* ΠΒ *82= մ. թ. ա. մոտ 44 թ.: Մենագիրը՝* BN *(տե՛ս ձև № 38), արծվի ոտքերի միջև նշան՝* ⩘ *(տե՛ս ձև № 40): Ա կողմում նույն մանրամասնությունները, ինչպես նախորդում, թեև դրվագված այլ կնիքով: Տ. 28 մմ, ք. 14,25 գր., կ. ↑, ՀՊԹ, № 16094:*

75. Նույնը, *բայց տարեթիվը՝* ΠΓ*=83= մոտ մ. թ. ա. 43 թ.: Մենագիրը՝* Δ *(տե՛ս ձև № 35), արծվի ոտքերի միջև անորոշ նշան (տե՛ս ձև № 34): Շրջագծերը չեն պահպանվել: Տ. 25 մմ, ք. 14,30 գր., կ. ↑, ՀՊԹ, № 17824/31:*

76. Նույնը, *բայց տարեթիվը՝* ΠΔ=*84=մոտ 42 թ. մ. թ. ա.: Մենագիրը՝* BN *(տե՛ս ձև № 38), արծվի ոտքերի միջև նշան չկա: Ա. կողմը դրոշմված է ուրիշ կնիքով: Մանրամասնությունները ինչպես նախորդում: Տ. 26 մմ, ք. 14,36 գր., կ.* ↑, *ՀՊԹ, № 16093:*

77. Նույնը, *տարեթիվը՝* ΠΔ=*84=մոտ 42 թ. մ. թ. ա., բայց մենագիրը՝* Ꞵ *(տե՛ս ձև № 41), արծվի ոտքերի միջև* ց *(տե՛ս ձև № 26): Առաջին կողմի կնիքը տարբեր է, շրջագիծը չի պահպանվել: Մանրամասնությունները ինչպես նախորդում: Տ. 26 մմ, ք. 14,30 գր., կ.* ↗, *ՀՊԹ, № 15149:*

78. Նույնը, *տարեթիվը՝* ΠΔ=*84=մոտ 42 թ. մ. թ. ա.: Մենագիրը՝* Ꞵ *(տե՛ս № 41), արծվի ոտքերի միջև՝* ց *(տե՛ս ձև № 26): Շրջագծերը կետավոր են: Մանրամասնությունները ինչպես նախորդում, բայց դրոշմված այլ կնիքներով: Տ. 29 մմ, ք. 14,30 գր., կ.* ↗, *ՀՊԹ, № 15147:*

79. Նույնը, *տարեթիվը՝* ΠΔ=*84=մոտ 42 թ. մ. թ. ա.: Մենագիրը՝* ЗN *(ձև № 42), արծվի ոտքերի միջև՝* ց *(տե՛ս ձև № 26): Տ. 27 մմ, ք. 14,40 գր., կ.* ↑, *ՀՊԹ, № 17824/32:*

80. Նույնը, *տարեթիվը՝* ΠΔ=*84=մոտ 42 թ. մ. թ. ա., սակայն մենագիրը՝* BN *(տե՛ս ձև № 36), արծվի ոտքերի միջև՝* ց *(ձև № 26): Այս տետրադրախմայի առաջին կողմը դրոշմված է նախորդ օրինակի կնիքով: Տ. 27 մմ, ք. 14,25 գր., կ.* ←, *ՀՊԹ, № 17824/33:*

81. Նույնը, *ինչպես նախորդը, բայց դրոշմված այլ կնիքներով: Խորագիրը՝* ΚΑΙΑΣΥΛΟΥ ΤΥΡΟΥΙΕΡΑΣ: *Շրջանակները չեն պահպանվել: Տ. 26 մմ, ք. 14,33 գր., կ.* ↑, *ՀՊԹ, № 18215/4:*

82. Նույնը, *բայց տարեթիվը՝* ΠΕ=*85=մոտ մ. թ. ա. 41 թ.: Մանրամասնությունները ինչպես նախորդում, թեև դրոշմված են տարբեր կնիքներով: Տ. 29 մմ, ք. 14,30 գր., կ.* ↖, *ՀՊԹ, № 15152:*

83. Նույնը, *ինչպես նախորդը, տարեթիվը՝* ΠΕ, *բայց տարբեր կնիքներից ելած: Մենագիրը՝* ΙΑ *(տե՛ս ձև № 43), ներքևում արծվի ոտքերի միջև մի ուրիշ նշան* ✕ *(ձև № 44): Խորագրից պահպանվել է* ΚΑΙΑ ΣΥΛΟΥΤΥΡ[ΟΥΙΕΡΑΣ]: *Երկու կողմերի վրա էլ երիզափակ շրջանակները կետավոր են: Տ. 27 մմ. ք. 14,27 գր., կ.* ↑, *ՀՊԹ, № 18215/5:*

84. Նույնը, *բայց տարեթիվը՝* ΠC=*86=մոտ մ. թ. ա. 40 թ.: Մենագիրը՝* Ꞵ *(տե՛ս ձև № 41), արծվի ոտքերի միջև՝* ց *(տե՛ս ձև № 26): Ա. կողմը դրոշմված մի այլ կնիքով: Տ. 28 մմ, ք. 14,30 գր., կ.* ↑, *ՀՊԹ, № 15148:*

85. Նույնը, *բայց տարեթիվը՝* ΠΖ=*87=մոտ մ. թ. ա. 39 թ.: Մենագիրը՝*

